# Հուշարձաններ

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

Հուշարձաննե՛ր, հուշարձաննե՛ր,
Որ կանգնած եք հպարտ ու լուռ,
Ձեր լռության, խոհի մեջ ձեր
Կա ջերմաշունչ մի հրապույր։
Քաջեր էիք, դուք լի սրտով
Կռվում էիք դաշտում արձակ,
Եվ տարիներն անցան հերթով,
Դուք այլևս ետ չդարձաք։
Ընկաք փառքով մի գեղեցիկ
Կյանքի համար մոր ու մանկան,
Ձեր գարունը դուք այրեցիք,
Որ գարուններն ապրեն ու գան։
Հուշարձաննե՛ր քարաքանդակ,
Մեր օրերի գահե՛ր կանգուն,
Ձեր խոհի մեջ ծով կա անտակ,
Որ լռությամբ է աղմկում։
Մեկի հայրն է ձեր մեջ քնած,
Եվ եղբայրն է ննջում մեկի,
Ձեր հիմքի տակ աղբյուրը գանձ
Ձայնն է բերում նրանց երգի։

Այդ կարոտն է նրանց վարար,
Որ ելնում է ու կարկաչում...
Թող իմանա աշխարհն արար,
Որ հերոսները չեն կորչում։
Նրանք ջուր են դառնում ու լույս
Եվ խայտանք են դառնում պայծառ,
Իրենց դարով փոթորկահույզ
Ճանապարհ են գնում անծայր․
Նրանք կյանքն են պահում զվարթ
Սխրանքներով իրենց սրտի,
Հավատի մեջ դառնում հավատ
Ու տանում են նորից մարտի։
Հուշարձաննե՛ր, հուշարձաննե՛ր,
Կարո՛տ տվեք՝ կարոտ մարդուն
Եվ լռության խոհով դուք ձեր
Վեհությունը պահեք արթուն։
Ամեն անցորդ անմեղորեն
Թող երազանք ձեզնից տանի,
Թող դարերը ձեզ համբուրեն,
Հուշարձաննե՛ր Հայաստանի։

# ԵՍ ՄԻ ԸՆԿԵՐ ՈՒՆԵԻ...

ՀՈՎՀ. ՂՈՒԿԱՍՅԱՆ

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

Ես մի ընկեր ունեի, անունը... Ներսիկ:

Զարմանո՞ւմ եք. ես այլ կերպ չէի կարող սկսել:

Սա էլ տխուր պատմություն է, իհարկե, ոչ այնքան ողբերգական, ինչպես Թումանյանի պատմածը, իսկ ինչ վերաբերում է անունին, երբեք էլ հնարովի չէ, որովհետև նրա անունը իսկապես Ներսես էր, իսկ ինքը իր տետրերի և դասագրքերի վրա Ներսիկ էր գրում, ճիշտ այսպես՝ Ներսիկ Օհանյան:

Ես նրա հետ չէի սկսել իմ դպրոցական կյանքը: Ինչքան հիշում եմ, հինգերորդ թե վեցերորդ դասարանում էր, որ ես հասա նրան, իսկ Ներսիկն այդ ժամանակ արդեն հինգ-վեց տարով մեծ էր բոլորից: Պետք է ասել, որ ես շատ տպավորվող լինելով՝ հենց առաջին իսկ օրից համակրեցի նրան և, ինչու թաքցնեմ, որովհետև այդ օրերին շատ էի ուզում մեծ երևալ՝ ինձ համար միանգամայն հաճելի էր նրա հետ ընկերություն անելը:

Բարի՜, շատ բարի տղա էր Ներսիկը՝ ամուսնուն կորցրած իր մոր միակ հույսն ու գուրգուրանքի առարկան: Բայց վա՜տ էր սովորում, շա՜տ վատ և արդեն երրորդ տարին էր, ինչ նստում էր նույն նստարանին, որի վրա էլ ես ընկերացա նրա հետ: Ներսիկն ասես հենց հիմա էլ աչքիս առաջ է. բարձրահասակ, նիհար, ներս ընկած ուսերով ու միշտ ասես ինչ-որ բանից վախեցած, սառչող աչքերով: Չգիտեմ ինչու, ինձ թվում էր, որ նա շատ դժգոհ էր իր հարթ ու երկար մազերից, որոնք ինչքան էլ թրջելով ետ էր սանրում՝ թափվելով ծածկում էին բավականին խոշոր ականջներն ու ծիծեռնակի թևերի պես կախվում գունատ այտերի վրա: Բայց մի՞թե մարդու համար գլխավորը արտաքինն է և մի՞թե քիչ կան աշխարհահռչակ բանաստեղծներ ու երաժիշտներ, որոնք ամենևին էլ չեն կարող պարծենալ բայրոնյան գեղեցկությամբ, և կամ՝ Բայրոնին նմանվող շատ բանաստեղծներ, որ բանաստեղծ չեն:

Ինձ դուր չէր գալիս միայն նրա ձեռագիրը. սոսկալի վատ ձեռագիր ուներ և, թեև գրում էր տարբեր գույնի թանաքներով ու ոտանավորների տետրակների շապիկները զարդարում ծաղկագրերով, էլի ոչինչ չէր ստացվում: Իհարկե, դա ոչինչ էլ չի նշանակում. գլխավորը գործն է, ստեղծագործությունը:

Սակայն դուք ինձ սխալ չհասկանաք, խնդրում եմ, սխալ չհասկանաք. իհարկե, գերադասելի է գեղեցիկ ձեռագիրը, և ո՞վ չի ցանկանա գեղեցիկ ձեռագիր ունենալ:

* * *

Բայց ես կարծես թե ինչքան մոտենում, այնքան էլ հեռանում եմ բուն նյութից այնպես, ինչպես դեմքդ չափից ավելի պատկերին մոտեցնելիս չես տեսնում ամբողջականը՝ էականը:



Չափազանց ամոթխած էր Ներսիկը, լռակյաց և մի քիչ էլ ձախորդ, ինչպես հեքիաթի Փանոսը։ Հատկապես շատ էր քաշվում աղջիկներից, իսկ խաղերին համարյա թե չէր մասնակցում։ Մասնակցելիս էլ ընկնում էր խղճալի վիճակի մեջ։ Եթե ուզում էր ինչ-որ բանով ուրախանալ՝ վերջը տխրում էր։



Երբեք չեմ մոռանա. մի խումբ անվանի գրողների հետ պիտի հանդիպում ունենայինք։ Բոլորս էլ ոգևորված էինք, բայց ես՝ ավելի շատ Ներսիկի համար։ Իսկ նրան ոչ որ չէր նկատում, բոլորն էլ բորբոքված վիճում էին. ծրագրում, թե ինչպես ընդունեն հյուրերին՝ ծաղիկներո՞վ, թե՞ լավ կլինի վերջում ալբոմներ կամ արձանիկներ նվիրել։ Ներսիկը քաշվել էր մի կողմ և այդ անտարբերությունից փոխանակ տրտմելու, որ ոչ ոք իր կարծիքը չի հարցնում, շնորհակալ մի հայացքով նայում էր նրանց։ Ճիշտն ասած, դա արդեն ինձ դուր չէր գալիս. չէ՞ որ ոչ ոք այնքան իրավունք չուներ այդ հանդիպմանը մասնակցելու, ինչքան նա։ Ես սրտանց ցանկանում էի, որ գրողներն իմանային, որ մի անհայտ գրչակից ունեն մեր դպրոցում, և որը տարիներ հետո, անկասկած, ծաղիկներ է ստանալու, ալբոմներ ու արձանիկներ։

Եվ պատկերացնու՞մ եք, թե ինչքա՜ն ուրախացա, երբ մի օր, նախքան հանդիպումը, նա կարմրելով հայտնեց, որ հյուրերի կարծիքը իմանալու համար ուզում է իր գրածները ցույց տալ նրանց։ Հանդիպումը հիանալի էր. միայն ես չափազանց դժգոհ էի, որ նա առաջին շարքում նստելու փոխարեն ինձ էլ քաշել տվեց միջին շարքերը։ Ծնոտը ցցած, կիսախուփ աչքերով նա նայում էր ծաղիկներով զարդարված բեմին և, թեև ստանավորների տետրակը ամուր սեղմել էր ծնկներին, բայց, այնուամենայնիվ, ես զգում էի, թե ինչպես էր նա դողում։ Վերջապես հասավ հրաժեշտի պահը։

— Դե, առա՜ջ անցիր, մոտեցի՛ր, ի՞նչ ես կանգնել,— շտապեցնում էի ես նրան,— արդեն դուրս են գալիս։

Մի կերպ հասանք ամբիոնին, բայց նա շփոթմունքից քարացել էր տեղում և դուրս եկողների հետ քշվում էր դեպի դուռը։

— Վերցրու՛, վերցրու՛ մեկի հուշանվերն ու այդպիսով խոսք բաց արա,— նրա կողը բոթելով շշնջում էի ես՝ ոչ պակաս խանգարելով դուրս եկողներին։

Վերջապես համարձակվեց. վերցրեց գրողներից մեկի ստացած ալբոմն ու ինչ-որ գիպսե արձանիկ։ Գրողը սկզբում առարկում էր, բայց վերջում տեղի տվեց ժպտալով, որովհետև շփոթմունքից կասկարմիր կտրած Ներսիկը անընդհատ շշնջում էր. «մինչև մեքենան, մինչև մեքենան...» Բայց... աստիճանների վրա, պատկերացնու՞մ եք, չգիտեմ ինչպես եղավ, նրանի՞ց, որ նա իջնելիս երկչոտ հայացքը չէր կտրում իր կողքից իջնող ծանրամարմին գրողի ինքնագոհ դեմքից, թե՞ ինչ-որ մեկը գլխով արմունկին... Ալբոմի կազմը խախտվել էր տեղից, արձանիկից միայն գիպսե ճերմակ կտորներ էին մնացել... Դրանից հետո էլ ի՞նչ ստանավորների հարց կարող էր լինել, ի՞նչ կարծիք...



Ահա թե ինչպիսին էր նա. ուզում էր, սրտանց էր ուզում ինչ-որ լավ բան անել, բայց չէր ստացվում։

Ճիշտն ասած, այն ժամանակ ես էլ չէի հասկանում նրա ձախորդությունների պատճառը և երբ իմացա՝ արդեն ուշ էր...

* * *

Մոտենում էին տարեվերջի քննությունները։ Զարմանալու ի՞նչ կար, որ Ներսիկը ամենևին էլ

չէր մտահոգվում։ Դե, ես արդեն ասել եմ, ոտանավորները նրան շա՜տ հեռու էին տարել։ Մինչ մեզանից ամեն մեկը գիշերը ցերեկին խառնած քննությունների էր պատրաստվում, նա իր հանգերի հետ էր և կարծես չէր լսում ո՛չ մոր, ո՛չ իմ և ո՛չ էլ ուսուցիչների ահազանգերը։ Ընդհակառակը, նա արտակարգ ուրախ և ոգևորված էր այդ օրերին։ Եվ ահա մի օր էլ, դասի ժամանակ, նա մի թղթիկ սահեցրեց իմ առաջ։

Նայեցի. գրված էր «Ներսիդա»։ Ուսերս ցնցեցի․ ի՞նչ ասել է «Ներսիդա»։

— Հետո կասեմ,— շշնջաց ականջիս տակ,— քեզ անպայման կասեմ...

Եվ ինչպե՜ս էր շփոթված, և ինչքա՜ն երջանիկ էր թվում։ Ու ասաց. և ի՞նչ եք կարծում, ի՞նչ ասաց... Սկզբում ականջներիս չհավատացի, բայց հետո զգացի, թե որքա՜ն քնածի մեկն եմ եղել, որ



մինչ այդ, այնքան մոտիկ լինելով, չեմ իմացել, որ մեր դասարանցի Աիդայի անունը այդքան դուր է գալիս նրան։ Ահա թե ինչու էր նա դասերի ժամանակ անընդհատ նայում Աիդայի կողմը... Հասկանալի՞ է. Ներսիկը նոր կեղծանուն էր ընտրել՝ իր և Աիդայի անունները միացնելով և, դյուրահնչյուն դարձնելու համար, դեն էր նետել «Ա»-ն։

Ճիշտն ասած, երբ լսեցի, ես ոչ միայն զարմացա, այլև մի քիչ էլ վախեցա Ներսիկի փոխարեն՝ Աիդան շա՜տ ճարպիկ, իր իրավունքները ոչ ոքի չզիջող լեզվանիի մեկն էր. մի՞թե նա թույլ կտար, որ Ներսիկը, այն էլ Ներսիկը, վերցներ իր անունը և խառներ նրա անվանը...

Բայց և այնպես հարցրի.

— Իսկ ինքը գիտի՞...

Նա իր միշտ թանաքոտված մատը դրեց շըրթունքներին. պարզ էր, որ դա գաղտնիք էր մնալու մեր մեջ։ Իսկ գաղտնապահությունը միշտ խորհրդավոր ու սիրելի բան էր ինձ համար։ Հետո, այնքա՜ն փոքր էի, դե, հազիվ տասներկու-տասներեք տարեկան, որ նույնիսկ ասացի.

— Դու միայն «Ա»-ն չես հանել, դու մի հատ էլ «Ի» ես հանել. դա քո՞ «Ի»-ն է, թե՞ նրանը։

Ներսիկը ժպտաց. իհարկե պիտի ժպտար. նա ամբողջ մի հինգ տարով մեծ էր ինձնից...

Բայց այդ հինգ տարվա տարբերությունը մի հինգ օրվա մեջ չքացավ։ Այդ հինգ օրվա մեջ ես այնքա՜ն մեծացա, որ սկսեցի նույնիսկ քննադատի պես հասկանալ Աիդային նվիրված Ներսիկի ոտանավորները։ Հիշում եմ, դրանցից մեկը սկսվում էր այսպես.

Հանց չքնաղ Աիդան,
Որ պոետ է Ներսիդան
Ու երգում է հարազատ,
Հայրենիքում իր ազատ...

Ես չէի ընդունում այդ «հանց»-ը, գտնելով, որ դա իր տեղում չէ, իսկ Ներսիկը ինձ համոզում էր, որ եթե «ինչպես» գրի՝ մի վանկ կավելանա, իսկ «ոնց»-ն էլ շատ հասարակ է...

Հետո նա Լերմոնտովի «Մծիրի»-ի չափով սկըսեց մի մեծ պոեմ՝ էլի Աիդային նվիրված։ Նա կարդում էր ինձ տուն առ տուն և ասում, որ «Մծիրի»-ից էլ լավ է ստացվում... Սակայն մի բան լավ չէր ստացվում, և այդ ինձ չափազանց տխրեցնում էր։ Ներսիկը ուղղակի մոռացել էր գալիք քննությունները։

Հիշում եմ, քիմիայից էր քննությունը։ Արդարացնելու համար չեմ ասում, բայց, իսկապես, Ներսիկի բուկը մի շաբաթից ավելի էր, ինչ ցավում

էր, և նա դպրոց էր գալիս տխրության մեջ: Երբ տրված հարցերից ոչ մեկին չկարողացավ պատասխանել, ընկեր Կարապետյանը բռունցքը այնպես զարկեց գրասեղանին, որ երկու կտոր եղավ: Բոլորս էլ խոր լռության մեջ նայում էինք մերթ նրան, մերթ Ներսիկին, որը կուչ էր եկել գրատախտակի մոտ: Իսկապես խղճալի էր նա այդ վիճակում. մազերը թափվել էին երեսին, գունատվել էր ինչպես ձեռքի կավիճը և, վզին փաթաթած սպիտակ բանթանի պատճառով՝ գլուխը շարժելու ժամանակ պտտվում էր ամբողջ մարմնով: Նա ինչ-որ կմկմում էր, որից ես ոչինչ չհասկացա:

— Ոչինչ չե՞մ հասկանում,— ոտքը ամբիոնի պատվանդանին զարկելով՝ բղավեց ընկեր Կարապետյանը:

— Ասում է, նամանավանդ, որ բուկը ցավում է...— ծիծաղը հազիվ զսպելով ասաց Աիդան, և բոլորը քրքջացին:

— Մոլորվա՞ծ... Բանաստեղծի՞ս նայեցեք,— իրավացիորեն բորբոքվեց մեր ուսուցիչը և, գուցե ոչ



## ՁՄԵՌԱՅԻՆ ԱՐՇԱՎ

ՀԵՆՐԻԿ ԱՐԹԵՆՅԱՆ

Ինչ-որ անտես ներկարար
Ձյունաներկով իր վարար
Ճերմակեցրեց դաշտ, բլուր
Եվ Արագած սարը լուրթ:
Հենց որ թարմ ձյունը տեսան
Բնակիչներն անտառի,
Թե՛ կենդանի, թե՛ գազան,
Դուրս եկան մեծ արշավի:
Առաջնորդն էր աղվեսը,
Պոչն էր բռնում իր կեսը:
Իսկ ետևից ծանրաքայլ
Գնում էր մի մարդագայլ:
Մեկ էլ ճամփին, ծանր ու մեծ,
Ձմեռ պապին հանդիպեց:
Ձյունե մուշտակը հագին,
Պարկը՝ մի սար, շալակին,
Յուպը՝ բարդի երկնասույզ,
Ծխամորճը՝ ծխնելույզ:
Ձայն տվեցին.— Է՛յ պապի,
Տար մեզ քաղաք ուղղակի:
Մեր կողմերում ձյուն-ձմեռ,
Չի էլ ճարվում կարգին կեր:—
Ձմեռ պապին շուռ եկավ,
Այսպես ասաց ձայնով թավ.
— Իմ սանիկնե՛ր,
Գազանիկնե՛ր,
Հիմա չունեմ ժամանակ,
Պիտի իջնեմ ես քաղաք:
Գործեր ունեմ ես բազում.
Ձեռագործի, քանդակի
Ցուցահանդես եմ բացում:
Մանուկներն են քաղաքի
Հեղինակները նրանց...
Ա՛յ թե գործ է գերազանց:
Հաջորդ անգամ անպատճառ,
Հենց ոտք դնեմ ես անտառ,
Ձեզ անտառից կհանեմ
Ու Երևան կտանեմ:
Մանուկները, մանավանդ,
Սիրում են ձեզ այնքան շատ,
Որ տվել են եռակի
Կայծակնային հեռագիր.
«Խնդրում ենք քեզ, պապի՛ ջան,
Բե՛ր ամենքիս մի գազան»:

*տանից կարեկցանքի՝ ավելացրեց.— Վե՞րջ, մենք երրորդ տարեցիներին չենք պահում. կսովորես, բայց ոչ մեզ մոտ։*

*Ես հազիվ էի զսպում արցունքներս. երբեք չէի ցանկանա Ներսիկին այդպիսի վիճակում տեսնել. ախր ոչ որ երևի չէր զգում, թե ինչքա՜ն բարի և լավ ընկեր էր նա… միայն…*

*Այնուհետև ես նրան չտեսա։ Երկրո՞րդ, թե՞ երրորդ անգամ, երբ նրանց մոտ եղա, խեղճ մայրը գլուխն օրորելով ասաց, որ արդեն մի շաբաթից ավելի է, ինչ Ներսիկը արհեստագործական ուսումնարանում է և հենց այնտեղ է մնում…*

*Չտեսա ու այդ չտեսնելս է…*

*Ասում են, որ Ներսիկը արհեստագործականում էլ չմնաց, որ այժմ նա պահակություն է անում ինչ-որ մի գործարանում։ Ի՞նչ կա որ, պահակությունն էլ աշխատանք է, և աշխատանքը՝ պատվի գործ։ Բայց նա, այնուամենայնիվ, կարող էր սովորել և եթե սովորեր, գուցե և բանաստեղծ էլ դառնար։*

ԳՐԻԳՈՐ ԵՂԻԿՅԱՆ

## ՁՄԵՌԱՅԻՆ ՊԱՏԿԵՐ

Դրսում ցուրտ է, դրսում՝ թախիծ.
Գորշ երկնքից ձյուն է մաղում,
Ծիտիկները ցրտի վախից
Էլ չեն երգում, չեն ճռվողում։

Աղբյուրներն են վաղուց լռել,
Չեն խոխոջում առվակ ու գետ,
Արևն ասես անհետ կորել,
Երբեք, երբեք չի գալու ետ։

Էլ խինդ չկա հանդում, ձորում,
Ձյունն է հասնում մարդու ծնկին.
Այնտեղ բուքն է հիմա պարում՝
Բռնած խելառ իր տրնգին։

## ՁՄԵՌՆԱՄՈՒՏ

Ձմեռն եկավ ձյուն-ձիավոր,
Հեծած ցրտի ճերմակ թամբին,
Ուր որ դիպավ, շուրջը բոլոր
Սառույց կապեց նա իր ճամփին։

Հեռու-հեռվում ժայռերը լերկ՝
Ձյան թագն իրենց գլխին առան,
Ժանյակ հագան ծառերը մերկ,
Քողը մտած հարսներ դառան։

Շաղիկ-շաղիկ ցողը պաղեց,
Հուլունք դրեց ամեն ծեղի,
Ձյունոտ մեգի վրանը մեծ
Պատեց մրսած կուրծքը հողի։

Երկինքն ասես ալմաստ մաղեց,
Հունդը շողաց ճերմակ շողով,
Ամեն կողմից աստղի մի պեծ
Աչք է ծակում իր ասեղով։

Ձայն չի լսվում ոչ մի տեղից,
Բուքն է միայն շվի փչում,
Մեկ էլ հեռու-հեռու գյուղից
Ինչ-որ մեկի շունն է հաչում։

# ԶԻՆՎՈՐԻ ԳԴԱԼԸ




ԽԱՉԱՅԵԼ ՇԻՐՈՅԱՆ

Ընդարձակ բակի կենտրոնում պիոներները խարույկ էին վառել և սպասում էին քեռի Մուրադին:

Քեռի Մուրադը Հայրենական մեծ պատերազմի մասնակիցներից էր: Պիոներները գնացել էին մոտը և խնդրել, որ պատմի անցած կռիվներից, իր ճակատային կյանքից: Նա էլ համաձայնել էր: Բակի բնակիչներից մեկը նրանց հասկացրել էր, որ Մուրադ Կոթողյանը, այսինքն՝ քեռի Մուրադը, չբացված գիրք է, եթե կարողանան թերթել նրա էջերը, շատ բան կիմանան: Եվ պիոներները նրանից պոկ չէին գալիս: Քեռի Մուրադը, ճարահատյալ, համաձայնում է: Ընկերները խորհուրդ տվեցին, որ երեխաներին ներկայանա ճակատայինի հագուստով, այնպես, ինչպես տուն է վերադարձել պատերազմից: Այդպես էլ արել էր:



Զինվորական խունացած վերնաշապկին խնամքով ամրացված էին մայորի ուսադիրներ: Գլխարկն ու շալվարն էլ արևից ու փոշուց գունաթափված էին: Իսկ ճտքավոր կոշիկները, թեև նոր էին ներկված, բայց ըզգացվում էր, որ երկար ճամբաներ են անցել: Մեջքին ձիգ կապված էր կաշվե լայն գոտի: Ձախ կողմից կախված էր զինվորական դաշտային պայուսակը, աջից՝ ատրճանակի պատյանը:

Քեռի Մուրադը նստեց խարույկի մոտ դրված աթոռակին: Կրակի ցոլքերից շողացին կրծքի շքանշանները ու մեդալները:

— Ինչ շա՜տ են: Մեկ, երկու... չորս... վեց,— կիսաձայն հաշվեցին երեխաներից մի քանիսը:— Իսկ մեդալնե՜րը...

Քեռի Մուրադն առանձնական տեսք ուներ: Բակի երեխաները երբեք նրան այդպես չէին տեսել:

— Ա՛յ, եկել եմ, չգիտեմ, թե ինչ պիտի ասեմ: Տընից մինչև այստեղ հասա, մտքերս խառնվեցին, կծիկի ծայրը կորավ: Ասում էի, որ էդ տեսակ բաներից գլուխ չունեմ, չհավատացիք,— ասաց քեռի Մուրադը:

Նա մի պահ լուռ նայեց խարույկի շուրջը սեղմված տղաների ու աղջիկների շառագունած դեմքերին, հետաքրքրությունից այրվող նրանց ջինջ աչքերին, ձեռքը տարավ դեպի պայուսակը և այնտեղից հանեց ալյումինե մի գդալ, ճաշի սովորական գդալ, որ կգտնվի յուրաքանչյուրի տանը:



— Ահա այս գդալի մասին եմ ուզում ձեզ պատմել,— ասաց նա՝ ավելի հարմար դիրք ընդունելով:

Պիոներները զարմացած իրար նայեցին: Լսվեց շըշուկ, փսփսուց: Ոմանք էլ դժգոհ քթները կախեցին:

— Քսանհինգ տարի է պահում եմ այս գդալը: Միշտ հետս է եղել. թե՛ կռվի, թե՛ դադարի պահերին: Դնեպրն է անցել այս գդալը, Վիսլան, անցել է Օդերը, Բեռլին է հասել ու ետ եկել: Վախենում էի կորցնել: Վտանգի պահերին ծոցս էի դնում: Այդպես լավ էր: Ասես ավելի քաջ ու համարձակ էի դառնում...



Պիոներներից մեկը քեռի Մուրադի ձեռքից զգույշ վերցրեց խորհրդավոր գդալը, շուռումուռ տվեց, տընտղեց, մի քանի անգամ ձեռքերով շոշափեց ու տվեց իր կողքին նստած սևահեր աղջկան: Սա էլ նայեց, շոշափեց, տվեց հաջորդին: Գդալը ձեռքե-ձեռք անցավ: Ճա-

շի հասարակ գդալ, որ այլ պարագաներում, գուցե ոչ ոք վրան էլ չնայեր, այսօր դարձել էր զրույց, պատմություն....

Պոչի վրա անվարժ ձեռքով փորագրված էր ռուսերեն երկու տառ՝ A. C.

— Ո՞վ է Ա. Ս.-ն,— հանկարծ թռավ երեխաների բերանից: Գդալը նորից շրջան կատարեց: Ո՞վ է Ա. Ս.-ն: Ուրեմն՝ դա քեռի Մուրադի գդալը չէ. ապա ո՞ւմն է:

Այդ հարցը հանելուկի պես շարժեց բոլորի հետաքրքրությունը: Քեռի Մուրադը շարունակեց.



— 1942 թվականի մարտ ամիսն էր: Գտնում էի առաջավոր գիծ՝ փոխարինելու գումարտակի հրամանատարին, որ ընկել էր կռվում: Ինձ հետ էր գնդի կապավոր, շարքային Անդրեյ Սմիրնովը: Դեռ քսան տարին չբոլորած, կենսուրախ, կլորադեմ, խարտյաշ մազերով մի երիտասարդ էր, Սմոլենսկի կողմից:

Գիշեր էր: Մութ: Բարակ անձրև էր մաղում: Չորս կողմը խաղաղ էր. ո՛չ մի շարժում, ո՛չ մի ծպտուն: Ընդարձակ դաշտում երկուսով էինք՝ ես ու Անդրեյը: Նա քայլում էր առջևից, ձեռքում հեռախոսալարը, որը դիվիզիայի շտաբից ձգվում էր մինչև կրակի առաջին գիծը: Մեր հուսալի ուղեցույցը հեռախոսալարն էր, թե չէ, ով գիտե, կարող է շեղվեինք, կորցնեինք ճանապարհը: Իսկ ինձ հրամայված էր տեղում լինել դեռ լույսը չբացված: Շտապում էինք: Անձրև էր գալիս: Անդրեյը քթի տակ մեղմ երգում էր:

Մեր շորերը թրջվել, ծանրացել էին, և դժվարությամբ էինք քայլում՝ ցեխը ձյութի պես կպչում էր կոշիկներից: Է՛, զինվորի համար ի՛նչ՝ քայլում էինք ցեխ ու ջուր տրորելով:

Անձրևի խշշոցի հետ հանկարծ ականջներիս հասավ ինքնաթիռի խուլ դղրդյուն: Ձայնից իսկույն ճանաչեցինք՝ ֆաշիստական ինքնաթիռ էր: «Կեսգիշերին ինչո՞ւ է կոնչում այս անգղը»,— մտածեցի ես: Արագացրինք քայլերս: Քիչ հետո հեռվում երևացին կրակներ: Թափով վեր էին բարձրանում, ուժեղ լույս տալիս ու հանգչում: Թշնամու հրթիռներն էին, լուսավորում էին շրջապատը առաջավոր գծի ամբողջ երկարությամբ: Գերմանական զավթիչները վախենում էին գիշերային մարտերից, մեր հանկարծակի գրոհներից: Դրա համար էլ գիշերները շարունակ հրթիռներ էին բաց թողնում, հասկացնելով մեզ, թե արթուն ենք:

Խարույկի շուրջն ուրախ քրքիջ բարձրացավ: Մեծ ականջներով տղան օգտվելով առիթից՝ թեժացրեց խարույկը:

— Մոտենում էինք առաջավոր գծին,— շարունակեց քեռի Մուրադը:— Անձրևը համարյա կտրվել էր, ցեխն էլ գնալով քչանում էր: Մենք քայլում էինք, մի տեսակ թեթևացած, որ ժամանակին տեղ կհասնենք, բայց ահա նո՞ր անակնկալ: Ուղիղ մեր դիմաց, քսանից-քսանհինգ մետրի վրա, օդում պարաշյուտ երևաց: Պարաշյուտից կախված էր ուսապարկով մի մարդ:

— Դիվերսանտ է,— կիսաձայն ասացի Անդրեյին,— երևի հատուկ առաջադրանք ունի:

Մենք պառկեցինք: Անդրեյը ուսից ցած առավ ավտոմատ հրացանը: Հեռախոսալարը գոտկի տակ դրեց, որ ձեռքը ազատ լինի: Ես հանեցի ատրճանակս և պատրաստ պահեցի:

— Չկրակե՛լ,— կամացուկ հրամայեցի Անդրեյին:— Պետք է կենդանի բռնել:

Իրարից տասը քայլ հեռավորությամբ, փորսող տալով շարժվեցինք դեպի պարաշյուտը, որը դանդաղ ցած էր իջնում: Անդրեյը գնաց ծախից, ես՝ աջից: Մենք արդեն մոտեցել էինք, երբ պարաշյուտիստը թրմփաց գետին, գլորվեց կողքի վրա, ապա ոտքի կանգնեց, նայեց այս ու այն կողմ, շտկեց ուսապարկը և պարաշյուտը ետևից քարշ տալով թեքվեց դեպի ձախ:

Դիվերսանտը հազիվ մի քանի քայլ էր արել, երբ Անդրեյը ավտոմատը դեմ արած կանգնեց նրա առջև և գերմաներեն գոչեց.

— Հենդե հո՛խ: Այսինքն՝ ձեռքերդ վե՛ր:

Սա ձեռքը տարավ ատրճանակին: Բայց ետևից վրա հասա ես և ատրճանակը խլեցի: Հանեց դաշույնը: Անդրեյը ավտոմատի կոթով հասցրեց գլխին: Ֆաշիստի ձեռքը թուլացավ, դաշույնը ցած ընկավ: Էլ ի՞նչ պիտի աներ: Անձնատուր եղավ: Ձեռքերը պինդ կապեցինք մեջքին, իրերը շալակը տվինք և առաջներս գցած գնացինք:



Լույսը բացվում էր: Հեռախոսալարը մեզ ուղիղ տարավ հրամանատարական կետը: Անդրեյին թողի ֆաշիստի մոտ՝ խրամուղում, իսկ ես մտա բլինդաժ, որը գերաններով և հողով ծածկված գետնափոր տուն էր: Գնդի հրամանատարը՝ թիկնեղ մի երիտասարդ, քարտեզի վրա կռացած, նշումներ էր անում:

Երբ ես ներս մտա, պատվի առած զեկուցեցի, նա ժամացույցին նայեց և նախատական տոնով ասաց.

— Ուշ եք ներկայանում, ընկե՛ր ավագ լեյտենանտ Կոթողյան: Թշնամին նոր գրոհ է պատրաստում, իսկ գումարտակը հրամանատար չունի: Հենց նոր հայտնեցին, որ կոմիսարն էլ վիրավոր է:

— Ինձ ուշացրել է ուրիշը, ընկեր գնդապետ, թույլ տվեք ներս բերել:

Ես դուրս թռա: Անդրեյի ուղեկցությամբ ներս բերի դիվերսանտ-ին: Գնդապետը քարտեզը մի կողմ դրեց. մոտեցավ, շեշտակի նայեց դիվերսանտին և ասաց.

— Օ՛, պարո՛ն Մյուլլեր, քանի՛ ժամ է, որ մենք ձեզ էինք փնտրում, իսկ դուք ձեր ոտքով եք եկել: Ուրախ ենք:

Գնդապետը համհարզին գլխով արեց, և դիվերսանտին տարան: Ապա ուրախ մոտեցավ, գրկեց ինձ, գրկեց Անդրեյին, ամուր սեղմեց երկուսիս ձեռքը և ասաց.

— Ապրե՛ք, կտրիճնե՛ր, լավ «լեզու» եք բերել: Ներկայացնում եմ պարգևի: Հենց այսօր: Այո՛:

Հետո գնդապետը զրուցեց հետս: Քարտեզի վրա ցույց տվեց գումարտակի դասավորությունը, թշնամու կրակային կետերը և այն բարձունքը, որ պիտի գրավեինք, դուրս գայինք դեպի երկաթգիծը, որը զավթել էին հիտլերականները: Զրույցն ավարտվեց: Ես պատրաստվեցի գնալու: Անդրեյը, որը մինչ այդ մուտքի մոտ լուռ կանգնած լսում էր, դիմեց գնդապետին, խնդրելով, որ իրեն էլ ինձ հետ գումարտակ ուղարկի:

— Միտք ունես նորի՞ց «լեզու» բերել,— կատակեց գնդապետը:— Որ այդպես է, համաձայն եմ, գնա՛:

Կեսօրի մոտ տեղ հասանք: Հոգնած, քաղցած: Այնպե՛ս քնել էի ուզում: Է՛, կովի դաշտում զինվորին ո՞վ է էդ բախտը տվել: Աչքերս նոր էի փակել, երբ զանգեց հեռախոսը: Հայտնեցին, որ գումարտակի ձախ թևում հիտլերականները կասկածելի գործ են սկսել, սակրավորներ են աշխատում ճահճակալած տեղերում: «Երևի ճանապարհ են անցկացնում, որ տանկեր հանեն մեր թիկունքը»,— անցավ մտքովս: Բարձունքը պիտի գրավել քիչ զոհերով. այդ մասին էի մտածում ես: Որոշեցի խորհրդակցել վաշտերի հրամանատարների և քաղաշխատողների հետ:

Եկավ Անդրեյը, ձեռքին՝ կաթսայիկով ճաշ և բոքոն: Հացն ու ճաշը դրեց առջևս ու ինքը մի կողմ քաշվեց: Ասաց, որ ինքը կուշտ կերել է և մոտ չեկավ: Փընտրում եմ գդալս: Չկա: Հիշեցի, որ թողել եմ դիվիզիայի շտաբում: Անդրեյն առաջարկեց իր գդալը: Ես վերցրի ու սկսեցի ագահորեն ուտել դաշտային խոհանոցում պատրաստված բորշը: Տաք, համեղ: Անդրեյը գոհ ժըպտում էր: Ապա դարձավ ինձ.

— Էդ գդալը Մարֆան է տվել, մեր հարևանի աղջիկը: Մի խմբում էինք սովորում, միասին էլ ավարտեցինք դպրոցը: Ռազմաճակատ մեկնելու օրը Մարֆան էլ եկավ ճանապարհելու: Բերել էր տաք գուլպաներ, ձեռնոց և գդալը. իր ձեռքով էլ գդալի պոչին գրել էր Ա. Ս.: Այսինքն՝ Անդրեյ Սմիրնով: Լավ աղջիկ է Մարֆուշան, էնքան բարի, մեղմ: Տեսնես ո՞ւր է հիմա: Երբ գնացքը շարժվեց,— ասում էր Անդրեյը,— Մարֆուշան լաց եղավ, իսկ ես կանչեցի.— Լաց մի՛ լինի, Մարֆո՛ւշա, շուտով կվերադառնամ:

Բայց Անդրեյը տուն չվերադարձավ...

...Խարույկի վրայով խուլ հառաչանք անցավ: Քեռի Մուրադը երրորդ ծխախոտը վառեց և իր պատմությունը ավարտեց այսպես.

— Անդրեյին թաղեցինք այն բարձունքին, որի համար նա ընկավ հերոսի մահով: Ծոցագրպանում կոմերիտական տոմսն էր միայն և Մարֆայի նվիրած գդալը:

*Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ*





Ամենուր նրան Կռիլով պապիկ են ասում, նույնիսկ մեծահասակները։ Եվ դա հասկանալի է, քանի որ մեր հայրերն ու մայրերը, պապիկներն ու տատիկները և նույնիսկ նրանց ծնողներն ու պապերը, երբ դեռ փոքր են եղել, ձեզ նման, սիրելի երեխաներ, արտասանել են Կռիլովի առակները՝ «Աղվեսն ու խաղողը», «Գայլն ու գառը», «Կարապը, խեցգետինն ու գայլաձուկը» և այլն։ Որքան էլ մեծանում են մարդիկ, այդ գործերը երբեք մտահան չեն անում, որովհետև բարի ու խելացի պապիկ Ի. Ա. Կռիլովը հենց այնպես, միայն զվարճության համար չի գրել իր բանաստեղծությունները։ Նրա առակները այնքան խորն են, որ մարդ որքան մեծանում է, այնքան ավելի լավ է ընկալում դրանց իմաստը։ Վերցնենք թեկուզ «Ճպուռն ու մրջյունը»։ Ի՞նչ է ուզում ասել Կռիլովը։ Պարզ է, մարդ պետք է օգտակար աշխատանք կատարի, հոգա իր ապրուստը, այլապես ճրպուռի օրը կընկնի։ Ուրեմն, Կռիլով պապիկին սիրում են հատկապես նրա համար, որ նա սովորեցնում է ճիշտ ապրել, խելոք, ձեռներեց, համախմբված լինել, թույլ չտալ, որ ուժեղները նեղեն թույլերին։ Ահա թե ինչքան մեծ մարդասեր է եղել Կռիլովը և ահա թե ինչու են այսպիսի սիրով տոնում նրա ծննդյան 200-ամյակը մեր Միության բոլոր ժողովուրդները և ամբողջ աշխարհում։

# ԿԱՊԻԿՆ ՈՒ ԱԿՆՈՑՆԵՐԸ

Ծերացել էր կապիկը.
Լավ չէր տեսնում պապիկը.
Բայց հասել էր ականջին,
Թե արատ է դա չնչին,
Պիտի գնել լոկ ակնոց։
Գնաց, ճարեց մի կապոց...
Ակնոցները, հինգ թե վեց.
Էս կողմ, էն կողմ շուռ տվեց.
Մին դնում էր նա գլխին,
Մին էլ պոչի մեջտեղին,
Մին լիզում էր, թքոտում,
Մին էլ սրբում, հոտոտում,
Հա փորձում էր, հա փորձում...
Ակնոցները չեն գործում.
Էն պսպղուն ապակին
Լույս չի տալիս պապիկին։
Կորչե՜ն,— գոռաց,— ջուխտ
ու կենտ...
Նա՛ է հիմար, նա՛ է խենթ,
Ով լսում է շատ-շատին,
Մարդկանց հազար մի ստին։
Սրանց մասին,
Ինչ որ ասին՝
Սուտ է, սուտ,
Էս ապակին
Խավար աչքին
Ի՞նչ օգուտ։—
Եվ սրտնեղած ակնոցները
Էնպես շփեց չոր քարին,
Որ ջուր կտրած ցալքունները
Կանաչ-կարմիր կապեցին։



Նկ. ԱՆԱՏՈԼԻ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

# ԱՐՋԱՈՐՍ

ՇԱՄԻՐ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

Այս անգամ մենք պետք է գնայինք շատ հեռու՝ դեպի հինավուրց Վախսեն անտառը, որը գտնվում էր Էլֆինից մոտավորապես 40 կմ. հեռավորության վրա: Հայտնի է, որ այդ անտառը հարուստ է որսով: Տարվա հենց այն ժամանակն էր, երբ թույլատրվում է զբաղվել որսորդությամբ: Երեկոյան չմոռացա մաքրել ու կարգի բերել երկփողանի որսորդական հրացանս, քանի որ, ինչպես պատմում էին, արջերն այնտեղ ուղղակի վխտում են:

Առավոտյան արթնացա շատ վաղ: Մեր խումբը՝ զինված երկրաբանական մուրճերով ու որսորդական հրացաններով, ճանապարհվեց դեպի Վախսեն անտառը:

Գետափ գյուղը հասնելուն պես գնեցինք անհրաժեշտ մթերքներ, չմոռացանք նաև միս վերցնել խորովածի համար:

Հայրիկ Ասատուրովիչը՝ մեր արշավախմբի պետը, տարիքն առած մարդ էր, վերին աստիճանի կատակասեր: Նրա հետ աշխատող մարդիկ երբեք չէին տխրում, նույնիսկ, ամենադժվարին ժամերին: Չնայած արդեն վաթսուն տարեկան էր, դեռ հոգնության նշաններ ցույց չէր տալիս, բոլորիս հետ հավասար մագլցում էր ժայռոտ բլուրներն ու կտրում-անցնում դժվարանցանելի անտառները՝ ուշադրություն չդարձնելով ոչ մի վտանգի:

Եվ այսպես, մեր փոքրիկ արշավախումբը՝ զինված հրացաններով ու «քաջությամբ», մուտք գործեց պատմական Վախսեն անտառը՝ մեր պապերի երբեմնի հարուստ որսատեղին:

Անմիջապես երկու վրան խփեցինք, երեկոյան խարույկի համար մի մեծ կույտ վառելափայտ հավաքեցինք, իսկ Ավագը՝ մեր խոհարարը, արդեն սկսել էր խորովածի պատրաստություն տեսնել:

Մինչ խորովածը պատրաստ կլիներ, մենք որոշեցինք մի փոքր ծանոթանալ շրջապատին: Հայրիկը վերցրեց երկրաբանական մուրճը և դիմեց դեպի մոտակա բլուրը, որը ծածկված էր խիտ, մարդահասակ մացառներով: Ես հրացանս լցրեցի և հետևեցի Հայրիկին, որն արդեն բավականին հեռացել էր: Մի քիչ խորացա անտառում, և Հայրիկն արդեն չէր երևում. միայն լսվում էր նրա մուրճի մերթ ընդ մերթ կրկնվող հարվածների ձայնը, որը համարձակություն էր ներշնչում ինձ: Բայց այդ ձայնն էլ կտրվեց, և ես սկսեցի վախենալ: Վազելով մի հարյուր քայլ առաջացա, աջ ու ձախ նայեցի, բայց Հայրիկը չկար ու չկար:

Ու հանկարծ լսվեց մի խշխշոց, կարծես մեկը թաքուն մոտենում էր ինձ: Ես շունչս պահեցի (հրացանիս մասին չեմ էլ խոսում, որովհետև մոռացել էի նրա գոյությունը). մի «աներևակայելի հսկա», ծառերի ճյուղերը կոտրատելով, սոսկալի աղմուկով միանգամից դուրս թռավ անանցանելի թփուտներից և, կտրելով իմ ճանապարհը, անհետացավ անտառում:

Ապա ամեն ինչ լռեց: Ես արձանացա տեղումս, միայն կարողացա նկատել նրա կարճ պոչը և երկար ականջները: Ես այնքան էի վախեցել նապաստակի հանկարծակի թռիչքից, որ մի քանի րոպե չէի կարողանում ուշքի գալ: «Ամոթ քեզ, Գեղամ, նապաստակից էլ վախեցար»,— մտածեցի և, հիշելով անգործության մատնված հրացանս, իջեցրի ուսից, մի անգամ էլ ստուգեցի փականակը և կզույշ, շատ բըզգույշ առաջացա Հայրիկի գնացած ուղղությամբ:

Այդպես քայլեցի մոտ մի քսան րոպեի չափ և յուրաքանչյուր րոպեին էլ բուռն ցանկություն էի ըզգում ետ փախչելու: Միայն ամոթի կգացումն էր, որ կապում էր իմ մեջ Հայրիկին թողնելու և փախչելու միտքը: Վերջապես հեռվում, մի կոճղի վրա տեսա Հայրիկին, գլխարկը թափահարելով շտապ կանչում էր ինձ, միաժամանակ ափը մերթ ընդ մերթ տանելով բերանին, պատվիրում էր պահպանել լռություն: Ես մոտեցա նրան և հարցրի սովորական ձայնով.

— Ի՞նչ է պատահել, Հայրի՛կ Ասատուրովիչ:

— Սո՛ւս, մի քիչ կամաց խոսիր, արջը:

— Ո՞ւր է, Հայրի՛կ Ասատուրովիչ,— կակազելով հարցրեցի ես և զգացի, որ մարմինս փշաքաղվում է:

Մենք մտանք մացառուտները և շուտով հայտնվեցինք բացատի եզրին: Հայրիկը մատը առաջ պարզելով, ականջիս փսփսաց.





Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

— Չէ՛, Գեղա՛մ, տես ի՞նչ էլ մեծ է անտերը:

Թփերի արանքից նայեցի դեպի բացատը և ինչ տեսա՝ հենց մեր քթի տակ մի ահագին արջ, ոտքերը վեր տնկած, մեկնված էր գետնին, իսկ շրջապատի բուսականությունն ամբողջովին տրորված էր: Կարծես, թե խական պառկելուց առաջ նախ մի լավ պարել էր: Ես սկզբից չհասկացա՝ արջը քնա՞ծ է, թե՞ պարզապես հանգստանում է: Երևի Հայրիկը կարդաց իմ հայացքը, որովհետև նորից ականջիս փսփսաց.

— Քնած է:

— Խփե՞մ, Հայրի՛կ Աստուրովիչ,— ասացի ես՝ հրացանս պարզելով դեպի արջը, բայց իսկույն էլ զղջացի ասածիս համար, որովհետև, եթե նույնիսկ Հայրիկն առաջարկեր պարպել հրացանս, միևնույն է, ես այնքան քաջություն չունեի, չէի կարող կրակել, որովհետև ձեռքերս սաստիկ դողում էին:

— Ի՞նչ ես անում, հո չե՞ս գժվել, մի հրացանով ի՞նչ կարող ենք անել,— տագնապով ասաց նա և հապիվ բարձրացրած հրացանիս փողն իջեցրեց գետնին:

— Բա ի՞նչ անենք, Հայրիկ Աստուրովիչ, հո չե՞նք կարող ահագին որսը ձեռքներից բաց թողնել...

Տիրեց լռություն:

— Լսի՛ր, Գեղա՛մ,— շշնջաց Հայրիկը,— ես այստեղ կմնամ, որ սրան չկորցնենք, իսկ դու շուտ ի-ջիր ողերքի մոտ, Ավագին ու վարորդին վերցրու արի:

Ես էլ չսպասեցի, որ հրամանը կրկնվեր: Հայացքս արջից չկտրելով ետ-ետ գնացի, բայց դեռ հիսուն քայլ էլ չէի հեռացել, երբ հանկարծ ինչ-որ բանի բախվելով՝ շանթահարված քարացա տեղումս: Էլ ոչ շարժվել էի կարողանում ու ոչ էլ համարձակվում էի շուրջս նայել: Ամբողջովին կորել էի քրտնքի մեջ, ձեռք ու ոտքս թուլացան, հրացանս ընկավ գետնին: Միայն ատամներս էին կարկվում իրար չխչխկոցով: Ինձ թվաց, թե էն արջի ընկերն է, որ հանկարծակի վրա պրծավ թիկունքից և այժմ իր հզոր թաթերով կաշկանդել է ինձ: Երևի մի քանի վայրկյան տևեց այդ պահը, և թվաց, թե արջը գլորվեց՝ ինձ էլ տանելով իր հետ: Երբ ուշքի եկա, տեսա, որ դա ոչ թե արջ է, այլ փթած ծառի կոճղ: Նոր միայն վեր կացա, հրացանս վերցրեցի և շարունակեցի ճանապարհս:



— Ավա՛գ, Վահա՛ն, Սերո՛բ, շո՛ւտ արեք, ա՛րջը,— դեռ հեռվից կանչեցի ես:

Ավագը, որ արդեն խորոված շամփուրներն էր դասավորում կրակին, անմիջապես մտավ վրան, հրացանը ձեռքին դուրս վազեց և ոչ մի արջ չտեսնելով՝ դարձավ ինձ.

— Էլի սկսեցի՞ր քո կատակները...

Ես մի քանի խոսքով պատմեցի արջի մասին:

— Հա՞, դե որ էդպես է, գնա՛նք, տղե՛րք, իսկ դո՛ւ, Վահա՛ն, մնա այստեղ ու նայի՛ր, որ խորովածը չայրվի: Կրակը թե՛ժ պահիր, որ մի քիչ էլ արջի միս խորովենք,— պատվիրեց Ավագն ու առաջ ընկավ:

Սերոբն էլ մի ահագին գերան վերցրեց ու հետևեց Ավագին: Դեռ չհասած կաղնուտը՝ ես պգուշացրի տղաներին, որ չաղմկեն, թե չէ որսը ձեռքներիցս կփախցնենք: Ճիշտն ասած, հետո էլ ինքս ինձ մտածեցի. «Տո, Նապա՛ր, ո՞ւր ես մեծ-մեծ բրդում, բա որ արջը հանկարծ վարթնի ու լսի՞ քո ասածները...» Դե մեկն էլ պետք էր, չէ՞, որ թիկունքը պաշտպաներ: Հայրիկը մեզ տեսնելով՝ անհամբերությամբ հարցրեց.

— Ա՛յ տղա, որ մեկ էլ գնաս, ե՞րբ կվերադառնաս: Ինչո՞ւ այսքան ուշացաք,— հետո նկատելով Սերոբի տարօրինակ գունատությունը, ավելացրեց.— Աղա՛, քեզ ի՞նչ է եղել, դեռ արջին չտեսած ինչո՞ւ ես գույնդ գցել:

— Չէ՛, Հայրի՛կ Աստուրովիչ, մի քիչ փորս էր ցավում՝ անցավ...

— Դե լավ, որ հիվանդ չես՝ գնանք,— ասաց Հայրիկը ու դիմեց դեպի բացատը:

Մենք հրացանները պատրաստ պահած, լայն շղթայով հետևեցինք նրան: Հենց հասանք բացատի եզրին, մեր «քաջ» Սերոբը կանգ առավ, սարսափած հայացքով նայեց արջին, դեմքի գույնը մի քանի անգամ փոխեց ու փթած կոճղի նման տապալվեց գետնին, արձակելով միայն երկու բառ.

— Վա՜յ, աա՛րջը...

— Կամա՛ց, ի՞նչ ես գոռում,— շշնջացի ես:

Բայց նախազգուշացումն իզուր էր, որովհետև մեր Սեռոբն առժամանակ զրկվեց խոսելու ունակությունից, միայն ապշած հայացքով, առանց աչքերը թարթելու նայում էր դեպի բացատը:

Երբ արջը բոլորովին մոտ էր, ես մոտեցա Ավագին ու «աքլորացա»՝ ինքս էլ կարմանալով համարձակությանս վրա.

— Քեռի՛ Ավագ, թող սկզբից ես կրակեմ, իսկ դու պատրաստ սպասիր ու գլխին նշան բռնիր: Բայց տես, հա՜, հանկարծ չվրիպես, թե չէ՝ հացներս կուտենք, արջի փայ կդառնանք:

— Ա՛յ տղա, դե՛նը գնա, դա քո խելքի բանը չի:

Ավագն ինձ ու Հայրիկին . պատվիրեց սպասել տեղում, իսկ ինքն անհետացավ թփերի մեջ: Անցան մի քանի տանջալից րոպեներ, մենք դեռ գետնին պառկած, շունչներս պահած սպասում էինք ու մըտածում, թե ինչ կլինի վերջը, երբ հանկարծ արջի մոտից լսվեց Ավագի կարմացած ձայնը.

— Վա՛հ, ա՛յ տղա, էս հո քոթուկ ա՜:

— Իյա՛ա,— դուրս թռավ Հայրիկի բերանից:

Իսկ ես ոչինչ չկարողացա ասել, հաճելի թըմրությամբ փռվեցի խոտերի մեջ հանգստանալու (կարծես հենց նոր մահացու մենամարտ էի ունեցել արջի հետ):

Խելքս գլուխս եկավ:

— Իսկ ես,— ասացի,— քիչ առաջ դրա ախպոր հետ ·կռիվ տվեցի...— և ավելացրի.— Մե՛ն-մենակս...

Ու քանի որ էլ ամաչելու բան չունեի՝ պատմեցի, թե ինչպես արջի տեղ դնելով, կոճղի հետ մենամարտի բռնվեցի:

Ա՛յ թե բոլորով մի կուշտ ծիծաղեցինք: Նույնիսկ Սեռոբի դեմքին գույն ու ժպիտ երևաց:

— Ես ձե՛ր... սարսաղնե՛ր,— բացականչեց Ավագը...— խորովածը էնտեղ թողած...

Իսկ Հայրիկը վերջապես լրջանալով, պատվիրեց

— Տեսեք, հա՜, տղե՛րք, մարդու բան չա՛սեք՝ խայտառակ կլինենք...

Մենք բոլորս հանդիսավոր խոսք տվինք: Ես էլ, իհարկե...

Ինչպես տեսնում եք, խոստումս կատարում եմ...

# ԱՂՎԵՍՆԵՐԻ ԽՈՐԱՄԱՆԿՈՒԹՅՈՒՆԸ

(Որսորդի պատմածը)

ԱՐԱՄ ՇԱՀՐԻՄԱՆՅԱՆ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

*Ձմեռ էր: Ձյունը խոշոր-խոշոր փաթիլներով ծածկում էր կենդանիների հետքերը:*

*Ձորակի ձախ կողմով բարձրանալիս նկատեցի, որ աջով էլ մի այլ որսորդ է բարձրանում: Սովորաբար որսորդը որսորդին տեսնելիս չի կարող անտարբեր մնալ. պետք է մոտենա, հարցուփորձ անի, գուցե և ծանոթ լինի: Ծանոթ էլ չլինի, կարող են ծանոթանալ ու միասին որսը շարունակել: Քայլերս արագացրի ու հասա նրա ոտնահետքերին: Տեսնեմ այդ թարմ հետքերի վրա աղվեսն է ոտքը դրել: Նշանակում է աղվեսը հենց նոր է անցել: Որոշեցի հետապնդել աղվեսին: Գիտեի, որ այդ տաք օրերին աղվեսը բույնը չի մտնում, դուրս է եկել ճնճղուկներ կամ մկներ որսալու: Եվ գիտեի, որ նա ինձ շատ է չարչարելու, բայց հետաքրքրությունից մղված սկսեցի քայլել նրա հետքերով:*

*Ես արդեն կռահեցի, որ դա ծեր, փորձառու աղվես է: Ահա այստեղ նա սուսմեռուկի է տվել, ճնճղուկներ որսալու համար: Այստեղ էլ որսի հետապնդելիս թռիչքներ է գործել զույգ թաթերով, երբեմն էլ քառաթաթ. վերջին դեպքում չորս թաթերը մի տեղ են հետք թողնում: Այս հետքերից ես եզրակացնում եմ, որ այդ խորամանկը ինձ նկատել է և այնպես է թաքնվում, որ ես իրեն չկարողանամ գտնել: Շրջապատը ուշի-ուշով ստուգելով առաջ եմ շարժվում և նկատում եմ, որ մացառների արանքով, հետքը կորցնելու համար նորից իջել է ձորակը և նրա թողած հին ու նոր հետքերը խառնվում են իրար:*

*Մտածում եմ՝ հիմա ուր որ է կհանդիպեմ: Փամփուշտը փոխում եմ, հեռավոր նշանառության համար կարտեչ դնում ու, բարձրանալով ժայռի վրա, ստուգում եմ ամբողջ ձորակը: Իմ կռահումը ճիշտ դուրս եկավ. ձորի մեջտեղում կանգնել ու ինձ էր նայում աղվեսը: Անմիջապես նշան առա ու կրակեցի, գազանիկը գլորվեց ու անշարժացավ: Բայց ես չեմ կարող հավատալ աղվեսին, պիտի աչքս չհեռացնեմ նրանից. գուցե սուսմեռուկի է տվել: Իսկ եթե ես ժայռից իջնեմ, էլ նրան չեմ կարող տեսնել: Քանի որ ուրիշ ելք չկար, որոշեցի իջնել ժայռից և արագ վազքով հասնել աղվեսի ընկած վայրը:*

*Հևիհև տեղ հասա, բայց աղվեսը չկար: Արյան հետքեր նույնպես չկային: Երկար որոնումներից հետո հեռվում նկատեցի ձվի մեծությամբ կարմիր մի կետ: Իմացա, որ ընկած տեղից աղվեսը մեծ թռիչք է գործել, որպեսզի հետքը կորցնի:*

Այդ կարմիր կետից սկսած նրա ոտնահետքերի հետ կային նաև արյան հետքեր, որոնք ինձ տարան մինչև աղվեսի բույնը: Բայց ես սաստիկ զարմացա, երբ նկատեցի, որ արյունոտ հետքով աղվեսը բույնն է մտել, իսկ բնից մի նոր հետք է դուրս գալիս, առանց արյան:

Այդ կարճ ժամանակամիջոցում չէր կարող արյունը կտրվել, մնում էր ենթադրել, որ բնից մի ուրիշ աղվես է դուրս եկել հետախուզելու շրջապատը: Ես չսխալվեցի. բնից բավական հեռու, պատի հակառակ կողմից հազիվ նկատվում էր ինձ նայող աղվեսի դունչը: Հրացանս հենց բարձրացրի, նա իսկույն ծլկեց ու անհայտացավ պատի հետևում:

Ես արդեն հոգնել էի այդ խորամանկներին հետևելուց: Որոշեցի դիմել ուրիշ միջոցի: Բնի առջև, յուրաքանչյուր տասը քայլի վրա, մի քանի տեղ դրեցի ճարպի գնդիկներ, որոնց մեջ լցված էր աղվեսի թույն: Այդ տեղերը չկորցնելու համար ես նրանց մոտ տնկեցի ուռենու շիվեր ու վերադարձա տուն:

Մյուս օրը վաղ առավոտյան գնացի որսատեղ, հերթով հավաքեցի դեղի գնդիկները, բացառությամբ մեկի, որի մոտից աղվեսի հետքը շարունակվում էր: Սկսեցի նորից որոնել, բայց մի տեղ հետքերը աղավաղվեցին: Հուսահատված նստեցի մի քարի և հաց էի ուտում: Երբ արևը բարձրացավ, ձյունը քիչ հալվեց, հետքերի շարունակությունը նորից նշմարվեց: Ուրախացած կրկին ըսկսեցի որոնել, և ահա ձյան շերտի միջից երևաց աղվեսի դեղին մեջքը: Երբ փորձեցի վերցնել, աղվեսը չէր պոկվում գետնից, որովհետև նրա տաքությունից ձյունը հալվել էր, իսկ հետո սառցակալել, աղվեսին կպցնելով գետնին: Ենթադրեցի, որ նրա հետքը տրորելով կորցրել էր իր ընկեր աղվեսը, որին այդ օրը չհաջողվեց որսալ:

Երեկոյան ես հանդիպեցի ինձ ծանոթ մի հին որսորդի և պատմեցի այդ խորամանկի մասին: Նա ասաց, որ դա փորձառու հին աղվես է, քեզ շատ կչարչարի: Նրան որսալու միայն մի ձև կա: Պետք է թույնի գնդիկը անցկացնել որևէ թռչունի [illegible] մեջ ու գցել աղվեսաբնի մոտ: Ես կատարեցի ծեր որսորդի ասածը և, ինչպես ասում են, վարպետ աղվեսը չորս ոտքով թակարդն ընկավ:





# ՄԱՅՐ ՀՈՂԻ ԼԵԳԵՆԴԸ

ՀԱՄՈ ՀԱՐՅԱՆ

Հեռու, անհիշելի ժամանակներում, հայոց Եդեսիա քաղաքում, ասում են, իշխելիս է եղել Աբգար անունով մի արքա, որը հռչակված էր իբրև խաղաղասեր և իմաստուն մի մարդ: Այս Աբգարը, սակայն, ասում են, երբ շատ է նեղվում ռազմաշունչ հարևանների ձեռքից, ստիպված որոշում է ելնել գնալ Հռոմ՝ Օկտավիանոս կայսրից աջակցություն խնդրելու:

Եվ ահա, օրերից մի օր, արքայավայել ընծաներ առած, իր շքախմբով ճամփա է ընկնում մեր Աբգար արքան:

Գնում է Աբգարը ցամաքով, գնում է ծովով, լեռներ է բարձրանում ու իջնում պտղավետ հովիտներ, գնում է, գնում ու որքան հեռանում է հայրենի Եդեսիայից, այնքան հեռու է թվում Հռոմը, այնքան ավելի է տենչում շուտ հասնել, շուտ վերադառնալ...

Բայց քանի որ ամեն ճամփա իր վերջն ունի, Աբգար արքայի ճամփան էլ գալիս է, գալիս ու դեմ առնում տիեզերական մայրաքաղաքին: Հռոմ, որ Հռո՜մ... հըրաշք է, քաղաք չէ, տեսնողը կասի՝ մեկ էլ տեսնեմ, հազար ու մեկ էլ տեսնեմ...

Կայսրը պատվով ու մեծարանքով ընդունում է Աբգար արքային և հոգում, որ հյուրը ոչնչի պակասություն չունենա ու չտխրի օտարության մեջ: Այս Օգտավիանոս կայսրը, որն իրեն անվանում էր «Առաջին քաղաքացի», իրականում, ասում են, ապրում էր ոչ թե քաղաքացու, այլ իսկական կայսրի նման, և բռնությամբ էլ չէր զիջում ոչ մի բռնակալի: Կայսրը իր հյուրին մասնակից է անում պալատական խրախճանքների,



տանում է ձիարշավարան, գլադիատորների մենամարտերի, ամենուրեք իր կողքին բազմեցնում, զվարճացնում ու զարմացնում:

Սիրում է Աբգարը Հռոմը, հիանում չտեսնված հրաշալիքները տեսնելով, խոսք ու զրույցի է նստում մեծամեծ բանաստեղծների՝ Վերգիլիոսի, Հորացիոսի, Օվիդիոսի հետ, մասնակցում գրական հանդեսներին ու իմաստասերների բանավեճերին, իր խելքով ու բարքով գրավում նրանց համակրանքը, սիրվում նրանցից: Պալատում նա դառնում է ցանկալի մի հյուր, որի հետ լինելը հաճելի էր շատ և որից բաժանվելը՝ կորուստ: Օրերն անցնում են հետաքրքիր, նորություններով ու հաճույքներով լեցուն, բայց... բայց էլի պակաս է թվում ինչ-որ բան, ինչ-որ բան, կարծես, իր տեղում չէ... Ավաղ, ո՞ւր են հարազատները, ծանոթ ու սիրելի վայրերը... Տխրում է Աբգար արքան ու մտածում, որ ժամն է արդեն վերադարձի ճամփան բռնելու:

— Ողորմած կայսր, ժամանակը չէ՞, որ ձեր խոնարհ ծառան ձեզ «մնաք բարով» ասի:

— Օ՜,— զարմանում է Օկտավիանոսը,— մի՞թե այդքան վաղ ձանձրացաք տիեզերահռչակ Հռոմից ու նրա Առաջին քաղաքացուց: Հարկ չկա շտապելու, պատվական հյուրս: Համբերեցե՛ք, մնացե՛ք, դեռ ինչե՛ր եք տեսնելու...

— Սակայն...— կմկմում է Աբգարը և, հյուրընկալին չվիրավորելու համար, լռում է ու մնում դարձյալ մի քանի օր:

Մի քանի օր անց, էլի խոսք է բացում վերադարձի մասին, և կայսրն էլի համբերություն է մաղթում ու պահում: Սիրում է կայսրը իրեն շրջապատել բանաստեղծներով, երգիչներով, բանիմաց մարդկանցով: Աբգար արքան էլ, ինչ խոսք, համով-հոտով զրուցակից է, Հռոմի ուսյալ գիտուններից ինչ-որ բանով տարբեր, մի ուրիշ աշխարհի ծնունդ... Եվ կայսրը կուզեր, որ երկար մնար Աբգար արքան, լավ ու զանազան հուշերով վերադառնար, այսպիսով՝ Հռոմը մի լավ բարեկամ ու գովերգու կունենար կայսրության արևելյան դռների մոտ:

Բայց ահա, վերջապես, հատնում է Աբգարի համբերությունը, ու նա մտածում է այսպիսի մի բան: Այն, ինչ ուղղակի ասելով, կարող է սուր ու դիպչող լինել, առավել մեղմ ու համոզիչ կդառնա, եթե ասվի առակով, այլաբանությամբ:

— Օգոստափա՛ռ— ասում է Աբգարը,— իր հայրենիքում ձեր խոնարհ ծառան սովոր էր ամեն շաբաթ զվարճանալ որսորդությամբ: Մոտերքում կա՞ արդյոք առատ որսավայր և կարո՞ղ է նա օգտվել դրանից:

— Ինչո՞ւ չէ, բարեկա՛մս,— պատասխանում է կայսրը ուրախացած:— Վերցրե՛ք հենց իմ սեփական որսաշները: Գնացե՛ք ու փորձեք Արտեմիս դիցուհու բարյացակամությունը նաև Հռոմի հողում:

Բազակներ ու բազեներ առած, հագած-կապած, մի քանի հոգով ճամփա է ընկնում Աբգարը, գնում հասնում է որսատեղ, չափչփում սար ու ձոր ու հաջորդ օրը կեսօրին վերադառնում:

Կայսրն այդ ժամանակ, ըստ իր սովորության, ասում են, ձիարշավարանում է լինում: Աբգարը, որսով հանդերձ, գալիս մտնում է այնտեղ ու բերածը մեկ առ մեկ ցույց է տալիս նրան:

— Այս եղջերուն, կա՛յսր,— ասում է Աբգարը,— բռնված է բացատից: Շատ չարչարեց անիրավը, մինչև որ օղապարանը եղջյուրներն ընկավ: Բայց դա չի կարևորը, տե՛ր: Սրա բռնված տեղից ահա մի տոպրակ սևահող եմ բերել: Այս գայլը, կայսր, խանդակի եզրից բռնեցինք. բնի առաջ ծուխ դրեցինք, կիսախեղդ լինելով դուրս եկավ, ու դնչկալ հագցրինք: Այս երկրորդ տոպրակն էլ նրա որջի առջև դիզված շիկահողից է: Իսկ այս գորշ կրիան գետեզրից վերցրի, հետն էլ մի տոպրակ գետափի ավազից, որի մեջ ձվերն էր թաքցնում: Վերջապես, օձը, որ տեսնում եք,— ասում է ու ցույց տալիս թևին փաթաթած շիկակարմիր մի շահմար,— պառկած տաքանում էր ավազներին: Տեսե՛ք, ինչ էլ պ՜նված է անպիտանը: Մի՛ք վախենա, բերանը կարած է: Այս չորրորդ տոպրակում էլ ահա խճաքարեր են, որոնց վրա սիրում է պառկել այդ սողունը: Իսկ հիմա օգոստափառը թող տեսնի, թե Աբգարն ինչ է անելու:

Եվ Աբգարը ծառաներին հրամայեց, որ հողերը կույտ առ կույտ, հերթականությամբ, լցնեն ձիարշավարանում: Ապա ձիարշավարանի մուտքից մեկ-մեկ ներս թողեցին կենդանիներին:

Նախ մտավ եղջերուն. երկչոտ հայացքով նա շուրջը նայեց ու, մի քանի քայլ չարած, եկավ հասավ սևահողին, կանգնեց ու արձանացավ մնաց: Ապա, թափով, ասես հետևից մտրակում էին, ներս ընկավ գայլը: Եղջերուն շփոթվեց, ուզեց տեղից պոկվել, սակայն կարծես կճղակները ձյութի մեջ էին, հնաց ու մնաց տեղում: Գայլը մի պահ ուզեց նետվել նրա կողմը, բայց թուքը կուլ տալով առաջ սուրաց հանդիսականների հարայ-

հրոցի տակ, հասավ ձիարշավարանի մյուս ծայրը և այնտեղից եկավ ու սկսեց անհանգիստ պտտվել շիկահողի վրա: Բայց ոչ մի քայլ առաջ չդրեց, որ դունչը հասներ համեղ պատառին: Երրորդը ներս մտավ կըրիան՝ քաքսալով, ասես խեցու ծանրության տակ ճկռած և մանրաքայլ, եկավ անցավ եղջերուի ոտքերի արանքով, գայլի երախի առջևով ու գընաց կանգ առավ ավազի վրա, ոտքերն ու գլուխը ներս քաշեց, սսկվեց մնաց: Վերջում բաց թողին շահմար օձին, որը ոլոր-մոլոր աղուր գծելով երեք հողակույտերին՝ սողաց, եկավ ու կանգ առնելով, գունդուկծիկ եղավ տաքուկ խճաքարերի վրա:



— Ո՛վ պայծառատես կայսր,— ժպտում է Աբգար արքան,— կարծում եմ, նըկատեցիք, թե ինչպես ամեն մեկը, հմայվելով գնաց դեպի հողը հարազատ: Եղջերուն մի քայլ իսկ այն կողմ չանցավ, թեև մահն էր նրա՛ դեմ ցցված գայլի կերպարանքով: Գայլը համեղ եղջերուից գերադասեց մայր հողը: Օձը աղուրեց անցավ փափուկ շիկահողը, սևահողն ու ավազը և սողեսող հասավ կոշտ խճաքարերին, իսկ կրիան երկար ճամփա կտրեց մինչև ավազին հասնելը:

— Իրավացի՛ եք, երի՛ցս իրավացի,— բացականչում է կայսրը:— Այդ ի՞նչ ոգի է մայր հողի մեջ, զարմանալի՛ ուժ, հո՛ւյժ զարմանալի...

— Եվ արդ, տեսնում եք, օգոստափա՛ռ,— ասում է Աբգարը խորունկ խոնարհվելով,— անբան, անլեզու անասուններ են, բայց այդքան սիրում են այն հողը, որի վրա աշխարհ են եկել և ապրել մինչև այսօր, հապա, ասացե՛ք խնդրեմ, ո՛վ իմաստնագույն, ձեր մըտքով չի՞ անցնում, որ ձեր խոնարհ ծառան էլ կարող է նման զգացմունքներ ունենալ. նա, որ սիրտ էլ ունի, խելք էլ, նա, որ թողել է այնտեղ կին, երեխա, մտերիմներ, սուրբ հիշատակներ, թողել է թագավորություն, թեև փոքր, բայց հայրենի հողի վրա... Ուրեմն, թող ներող լինի երախտաշատ հյուրընկալս, եթե ասեմ, որ, թեև շա՛տ է հաճելի Հռոմը, բայց իմ փոքրիկ Եդեսիան առավել հաճելի է ու բաղձալի, և ժամն է, որ ճամփա ընկնեմ...

— Կամքը ձերն է, պարտված եմ ես,— ծիծաղում է Օկտավիանոսը,— բայց մինչև մեկնելը ասացեք ինձ, ո՛վ հնարամիտ արմեն, ինչո՞վ անմոռաց դարձնեմ մեր հանդիպումը. ի՞նչ կկամենայիք Հռոմից տանել իբրև հիշատակ:

— Ոչի՛նչ, ո՛վ հզոր, բացի ձեր բարեկամությունից և զորավիգ աջից՝ ընդդեմ ընչաքաղց հարևաններիս:

— Դա կա ու կա, անհոգ եղեք: Բայց ձեզ ի՞նչ ընծայեմ ձեր սիրելի Եդեսիան տանելու ի հիշատակ մեծն Հռոմից՝ շքեղ մարտակառքե՞ր, զենք ու զրա՞հ, ստըրկուհինե՞ր...

— Եթե շատ եք կամենում, ո՛վ առատաձեռն, այն ժամանակ կասեմ անկեղծ սրտով. կուզենայի իմ Եդեսիայում էլ այսպիսի ձիարշավարան ունենալ՝ ի հիշատակ մեր այս օրերի և ի հաճույս իմ ժողովրդի:

— Թող լինի՛: Կուղարկեմ ձեզ հետ ճարտար վարպետներ և իմ ծախսով կկառուցվի՝ ինչ որ կամեցաք...

Հրաժեշտ տալով հյուրընկալ կայսրին, Աբգար արքան իր շքախմբով ճանապարհ է ընկնում և կարոտավառ սրտով գալիս հասնում է հարազատ Եդեսիան:

Երբ մերձավորները հավաքվում են բարի գալուստ մաղթելու և գործերի վիճակն իմանալու, Աբգար. արքան, ասում են, պատմելով հրաշք Հռոմի, իրեն տրված պատիվ-հարգանքի մասին, ցույց է տալիս զանազան հուշանվերներ և ապա ավելացնում.

— Այս բոլորի հետ, բարեկամներս, Հռոմից մեզ համար բերել եմ մի այլ ընծա՝ անվնաս տխրություն և անօգուտ ուրախություն:

Դրանով, ասում են, նա ակնարկել է ձիարշավարանը՝ իր հաջողություններով ու պարտություններով:

Նկ. Ա. Լ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



# ԳԵՎՈՐԳԻ ԵՐԱԶԸ ԿԱՄ ԳԻՇԵՐԱՅԻՆ ԱՐԿԱԾ

ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

— Աշո՛տ:

— Հը՞:

— Այսօր մի երազ եմ տեսել, մի էնպիսի երազ, որ իմանա՜ս...

— Ի՞նչ երազ:

— Լսիր պատմեմ: Երազումս ման էի գալիս մեր գյուղի տակով հոսող առվի ափին: Մեկ էլ որտեղից-որտեղ մի բարձրահասակ, ոտաբոբիկ, երկար, սպիտակ մորուքով մարդ հայտնվեց:

— Հետո՞:

— Սպասի՛ր: Նա մոտեցավ ինձ, նայեց ուղիղ աչքերիս մեջ և ոչինչ չասաց: Հետո շրջվեց, նայեց առվի մոտի մեծ քարդուն և ձեռքով նշան արեց, որպեսզի հետևեմ իրեն: Նա քայլեց, ես գնացի նրա ետևից: Նա հասավ քարդուն, նայեց արևին, չորս քայլ գնաց դեպի հյուսիս, ձեռքի գավազանը խրեց հողի մեջ և ասաց. «Այստեղ... Աշոտի հետ...»

— Ինձ հե՞տ, ի՞նչը,— հարցրեց զարմացած Աշոտը, որի արկածածարավ երևակայության մեջ արդեն ջնջվել էին երազի և իրականության սահմանները:

— Չգիտեմ, էլ ոչինչ չասաց,— հառաչեց Գևորգը,— միայն ասաց՝ «այստեղ» ու չքացավ:

— Ափսոս,— անկեղծ ափսոսանքով ասաց Աշոտը,—լսի՛ր, արի գնանք փորենք, գուցե իսկապե՞ս որևէ բան կա թաղված: Գուցե ինչ-որ գաղտնիքի բանալի՞ կա: Գնա՛նք:

Գևորգը դիտմամբ մի քիչ չեմուչում արեց, ավելի շուտ ոչ թե հրաժարվելու, այլ Աշոտին ավելի տաքացնելու նպատակով: Հետո, իբր թե մի փոքր մտածելուց հետո, ասաց.

— Դե լավ, որ շատ ես խնդրում, կգնանք, բայց վախենում եմ, որ չարչարանքներս իզուր անցնեն:

— Ախպե՛ր, դու մի՛ չարչարվի, դու միայն տեղը ցույց տուր, ես մենակ կփորեմ,— ուրախացած ասաց Աշոտը:

— Լավ, կարծում ես փորելու՞ց եմ վախենում, երկուսով էլ կփորենք: Միայն սպասիր, մութն ընկնի, թե չէ ամբողջ գյուղը գլխներիս կհավաքենք: Հա՛, չմոռանաս՝ գրպանի լապտերիկդ բերես... Ես էլ բահը կբերեմ: Տես, հա՛, ոչ ոքի ոչ մի խոսք...

* * *

Դպրոցում բոլորն էլ լավ գիտեին երազկոտ, արկածամոլ Աշոտին: Նա երազում էր զանազան արկածալի ճանապարհորդությունների, նոր հայտնագործությունների և նույնիսկ հրաշքների մասին: Երազում էր նույնիսկ դասերի ժամանակ: Երազում էր և այնպես էր տարվում իր երազներով, որ ինքն էլ չիմացավ, թե ինչպես երկրորդ տարին մնաց վեցերորդ դասարանում: Երազում էր այնպես, որ հաճախ ինքն էլ էր հավատում իր երազների ճշմարտացիությանը: Հավատում էր և պատմում ընկերներին: Սրանք, թաքուն ժպիտներ փոխանակելով, լուռ լսում էին նրան, իսկ պատմությունն ավարտելուց հետո ըսկըսում էին ձեռք առնել.

— Աշո՛տ, բա էդ գրաբար գիրքը դու ինչպե՞ս կարդացիր:

— Մարդու պես: Էն ժամանակ ես գրաբար լավ գիտեի...

— Աշո՛տ, բոլոր պատմածներդ ճիշտ էին, բայց մենակ մի պուճուր սուտ ասացիր, ախր դու էդ հնդիկ ճանապարհորդի հետ ի՞նչ լեզվով էիր խոսում:

— Անգլերեն,— առանց աչքերը թարթելու պատասխանում էր Աշոտը:

— Հա՞, բա անգլերենից ստացած «երկուսնե՞րըդ»:

## ՄԻ՛ ԿՈՏՐԻՐ ՇԻՎԸ ԾԱՌԻ

ԴԱՆԻԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Մի՛ կոտրիր դու շիվը ծառի,
Որ ծնունդն է քո մայր հողի,
Որ գարնան գալուստն է բարի
Եվ աշնան խնդումն է դեղին:
Շիվն այդ ձմեռվա միջով
Գարնանն է ողջունում լռին,
Առվակն է խենթ, ուրախ ճիչով
Իր շունչը նվիրում ծառին:
Շիվն այդ երազանքն է բյուրեղ,
Քո կյանքն է, կարոտն է ծառի,
Նրանով աշխարհն է շքեղ,
Երկինքն է պայծառ ու բարի:

— Էդ հե՛չ, դասատուների դրածն է։

Ո՛չ առարկությունները, ո՛չ ծաղրը չէին կարող համոզել Աշոտին, որ իր պատմածներն իրականություն չեն։

Նա հավատում էր իր երազներին...

* * *

Լուսինն արդեն դուրս էր սահում ծառերի ետևից, երբ Աշոտենց պատուհանի տակ լսվեց պայմանական սուլոցը։ Աշոտի սիրտն ուրախությունից թրթռաց։

«Հիմա կիմանանք գաղտնիքը»,— մտածեց նա և գրպանի լապտերիկը վերցնելով՝ զգուշորեն դուրս եկավ։ Գևորգը շուրջը նայեց, ձեռքով ինչ-որ նշան արեց ու սուլեց։

— Էդ ի՞նչ է, էլի՞ մարդ կա,— անհանգստացած հարցրեց Աշոտը։

— Չէ՛, հենց էնպես փորձեցի, տեսնեմ, հո մարդ-մուրդ չկա՞։

Իջան դեպի առուն։ Ծառերի տակ խորհրդավոր խավար էր։ Ճյուղերի արանքից մեկ-մեկ երևում էր լուսինն ու իսկույն էլ անհետանում։

Միալար խշշում էր առուն։ Ահա և մեծ բարդին։ Չափեցին չորս քայլ դեպի հյուսիս։ Աշոտը վերևի կողմից ձեռքով ծածկեց լապտերն ու լուսավորեց գետնի մի պատառը։

— Ըհը՛, է՛ս էլ գավազանի տեղը,— ասաց Գևորգը։

— Վա՛հ... դե շուտ, բահը տո՛ւր։

Աշոտն անհամբերությամբ սկսեց արագ-արագ փորել։ Արագ աշխատելուց քրտնեց։

— Լավ, տո՛ւր մի քիչ էլ ես փորեմ,— ասաց Գևորգը։

Հանկարծ մի չրխկոց լսվեց և բահն ինչ-որ բանի դեմ առավ։ Աշոտը չհամբերեց ու սկսեց ձեռքերով ետ տալ փորած հողը։ Ձեռքը մի կլոր առարկայի դիպավ։ Սառը քրտինքը պատեց երեսը։ Նա նորից ետ տվեց չորս կողմի հողը և գլանաձև մի առարկա դուրս հանեց։

Շուտ լույսը վառի՛ր, տեսնենք ի՞նչ է,— հուզմունքից հևալով ու կակազելով ասաց նա։

Գևորգը լուսավորեց։ Աշոտի ձեռքին թիթեղյա մի հին, ժանգոտված տուփ էր, որի վրա տեղ-տեղ լատինական տառեր էին երևում։ Աշոտին թվաց, որ ինչ-որ տեղ տեսել է այդ տուփը, բայց այդ մասին մտածելու ժամանակ չտվեց Գևորգը.

— Զգու՛յշ բաց, ով գիտի ի՛նչ կա մեջը...

Աշոտը դողդողացող ձեռքերով բացեց կափարիչը։ Տուփի մեջ ալյումինե թերթիկով փաթաթված ինչ-որ իր կար։ Ալյումինե թերթիկի տակ հայտնվեց մոմաթերթը...

— Ինչքան էլ շա՛տ է փաթաթել անիծվածը...

— Ո՞վ,— հարցրեց Աշոտը,— հա, ծերունին։ Դեհ, դա նրա համար է, որ խոնավությունից ժամանակի ընթացքում չփչանա...

Բացեցին նաև մոմաթերթը և հանկարծ Աշոտի ձեռքերի մեջ մի կապտակազմ հաստ տետր հայտնվեց։

— Վա՛յ, սա հո իմ օրա...

Բայց նրա խոսքը բերանում մնաց։ Կարծես հենց բարդու միջից մի ծերունական ձայն լսվեց։

— Լսի՛ր, Աշոտ,— ասաց ձայնը,— եթե ուզում ես իմանալ մեծ գաղտնիքը, խոստացիր կատարել պայմանը։

— Խոս... խոստա... նում եմ,— թոթովեց սփրթնած Աշոտը։

«Ինչպես էլ փոխել է ձայնը,— մտածեց Գևորգը,— քիչ մնաց չճանաչեի»։

— Քո օրագիրը,— շարունակեց ձայնը,— ես վերցրել եմ գիշերը, երբ դու հանգիստ քնած էիր, և թաղել եմ այստեղ։ Երբ դու այլևս ոչ մի առարկայից «2» չունենաս, կբերես այդ օրագիրը և նույն ձևով կթաղես այստեղ... Եվ միայն այն ժամանակ ես քեզ կհայտնեմ մեծ գաղտնիքը...

Աշոտն այնպես էր տարվել այս ամենով, որ չէր նկատում ոչ ծառերի ետևից թաքուն իրեն նայող տղաներին, ոչ էլ ձեռքով նրանց թաքնվելու նշան անող Գևորգին։

— Հիմա հավատացի՞ր երազիս,— հարցրեց Գևորգը։



— Իհարկե, բա ես իսկի կասկածե՞լ եմ։ Էդ դուք եք, որ չեք հավատում ինձ։ Լավ է, որ դու վկա ես, թե չէ տղաներն էլի կասեին, որ փչում եմ։ Բայց ինձ ինչ-որ ծանոթ թվաց էդ ձայնը...

— Ծանո՞թ, չէ մի պոզե՛ր, իսկը ծերունու ձայնն էր...

* * *

Մյուս օրը Աշոտը դպրոցում պատմում էր իր գլխին եկածը, թիթեղյա տուփն ու ալյումինե թերթիկն էր ցույց տալիս և զարմանում, որ այս անգամ ոչ ոք չի առարկում իրեն...

# ԻՆՉՊԵՍ ԴԱՍՏԻԱՐԱԿԵՍ ԻՆՔԴ ՔԵԶ

Դու երբևէ մտածե՞լ ես, թե ինչու մարդիկ այդքան տարբեր են լինում: Նրանք ապրում են միևնույն երկրում, սովորում են միևնույն դասարանում, բոլորի դասագրքերը նույնն են, ուսուցիչները նույնպես, բայց ահա նրանցից ոմանք դառնում են կոնստրուկտորներ, ինժեներներ, ու գիտնականներ, իսկ ոմանք նույնիսկ լավ վարորդ չեն կարող դառնալ: Ոմանք բարի են և առատաձեռն, մյուսները չար են, գծուծ: Ինչո՞ւ: Նայիր շուրջդ՝ քո ընկերներին և հասակակիցներին. Մի՞թե նրանք բոլորն էլ նույն բնավորությունն ու հակումներն ունեն: Մեկը համառ սովորող է, մյուսը մի կերպ է հասցնում: Ոմանք ամեն ինչ կարող են անել, մյուսները նույնիսկ իրենց հագուստը չեն կարող մաքրել, ծույլ են և անբան, նրանց փոխարեն իրենց մայրիկները ամեն ինչ կանեն տանը, ընկերները կլուծեն բոլոր խնդիրները: Իսկ երբ մեծանան, կշարունակեն ուրիշի հաշվին ապրել՝ խաբել, իրենց գործը ուրիշի ուսերին գցել:

Կան երեխաներ, որոնք մտածում են, թե կմեծանան և իրենց երազանքները կկատարվեն, իսկ հիմա պետք չէ չարչարվել՝ սովորել դասերը, գիրք կարդալ, կամք մշակել, մարմինը կոփել: Նրանք չեն հասկանում, որ հենց հիմա, դպրոցական տարիներին է որոշվում, թե ինչ կդառնան իրենք, ինչի կհասնեն: Հայկական առածն ասում է. «Ինչ ցանես, այն էլ կհնձես»:

Ինչպե՞ս ճանաչես ինքդ քեզ:

Որպեսզի քեզ ճիշտ դաստիարակես, նախ և առաջ պետք է իմանաս քո դրական և բացասական հատկությունները: Այնքան էլ հեշտ բան չէ իրեն ճիշտ հասկանալը: Դրա համար անհրաժեշտ է.

Առաջին՝ ուշադիր լսել այն, ինչ քեզ ասում են մեծահասակներն ու ընկերներդ: Եթե բոլորը բողոքում են, որ դու ծույլ ես, նշանակում է, պետք է պայքարել ծուլության դեմ, քանի դեռ անբան Օբլոմով չես դարձել:

Երկրորդ՝ քո ամենավտանգավոր թշնամին քո սեփական թերություններն են: Մի թերությունը ծնում է մյուսին: Պարծենկոտությունը դառնում է նախանձ, կեղծիքը ծնում է խաբեություն, խաբեությունը հանգում է ստորության և վախկոտության, վախկոտությունը՝ դավաճանության: Որքան շուտ կգաս քո թերությունները, այնքան շուտ կազատվես դրանցից: Երբեք մի՛ վախեցիր սխալներդ խոստովանելուց, ավելի վտանգավոր է դրանք չնկատել կամ թե ծածկել:

Երրորդ՝ բոլորը չեն, որ քննադատելով քեզ, քո վատն են ցանկանում և բոլորը չեն, որ ներողամիտ լինելով քո թուլությունների նկատմամբ, քո բարեկամն են: Ամենավտանգավոր թշնամին հենց նա է, ով միշտ գովում է քո հիմար արարքները ,որպեսզի դու ավելի ծուլանաս, որպեսզի քեզ չսիրեն նույնիսկ քո իսկական ընկերները: Իսկական ընկերը պետք է քո թերությունը երեսիդ ասի: Միշտ հիշի՛ր, քո թերությունների իսկական թշնամին քո ամենալավ ընկերն է:

Իմանալ սեփական թերությունները կարող ես նաև ինքդ: Միայն դրա համար պետք է ինքդ քեզ լավ ստուգես: Եթե դժվար ես կենտրոնանում, չես կարողանում ուշադիր լսել ուսուցչին, նշանակում է պետք է ստուգես, թե ինչպիսին է քո ուշադրությունը: Ընկղբում ուշադրությունդ ստուգիր այնպես, ինչպես այդ անում են հետախույզների և սահմանապահների մոտ: Մոտեցիր պատուհանին, նայիր փողոց և թվարկիր այն, ինչ նկատեցիր: Իսկ ընկերդ թող հսկի՝ ճի՞շտ ես ասում: Հիշիր՝ ինչպես էր հագնված անցորդը, բոլոր այն առարկաները, որոնք դրված են ուսուցչի սեղանին կամ էլ ընկերոջդ սենյակում:

Հետո ստուգիր քո ուշադրությունը այնպես, ինչպես այդ անում են տիեզերագնացները փորձարկումների ժամանակ: Միացրու բարձրախոսը կամ ռադիոընդունիչը և բաց արա պատուհանը: Որքան կարելի է թող աղմուկ-աղաղակ լինի, փորձիր բանավոր 10 խնդիր լուծել: Որքան խնդիր լուծեցիր, այնքան են քո ունակությունները՝ խոչընդոտները հաղթահարելու համար: Այդպես էլ կարելի է ստուգել, թե ճի՞շտ ես պարապում դու, ինչպե՞ս ես օգտագործում հիշողությունդ: Տնային աշխատանքդ բաժանիր դժվարության տեսակետից երեք հավասար մասերի: Մեկը սովորիր այնպես, ինչպես միշտ ես սովորում և նկատիր, թե որքան ժամանակ անցավ: Հետո տեքստը բարձր ու տպավորիչ կարդա և նորից հիշիր, թե քանի ժամ անցավ: Հետո կարդա երրորդ հատվածը, յուրաքանչյուր պարբերությունում գտիր կարևոր միտքը և գրի առ: Եվ հետո մտածիր, թե ինչ միջոցով դու շուտ և լավ հիշեցիր: Եթե բոլորից լավ հիշեցիր այն, ինչ կարդացել էիր, նշանակում է լավ է զարգացած լսողական հիշողությունդ, եթե լավ հիշեցիր այն, ինչ գրել էիր, նշանակում է շարժողական հիշողությունդ է զարգացած, իսկ եթե լավ հիշեցիր տեսածդ, նշանակում է տեսողական հիշողությունդ է զարգացած: Խորհրդակցիր ձեր ուսուցչի հետ, թե ինչպես պետք է ճիշտ պատրաստել դասերը նման հիշողություն ունենալու դեպքում:

Հիշի՛ր, նույնիսկ դեպի տիեզերք տանող ճանապարհը սկսվում է աշակերտական նստարանից:




# ՄԵԾԱՄՈՐԻ ՀՆԱԳՈՒՅՆ ԼԵՌՆԱ-ՄԵՏԱՂԱԳՈՐԾԱԿԱՆ ԿԵՆՏՐՈՆԸ

Հայկական լեռնաշխարհը բազմաթիվ ավերակներով անվանվել է «Թանգարան բաց երկնքի տակ»։ Դա ճշմարիտ մի փաստ է, մեր ժողովրդի հնագույն և բարձր քաղաքակրթության առհավատչյան։ Հայաստանի տասնյակ հազարավոր պատմական հուշարձանների շարքը վերջին տարիներս հարստացվել է հազարին մոտեցող, հանքարդյունաբերության և մետաղագործության հետ առնչվող նոր հնավայրերով, որոնք գիտական որոնումների մի անսպառ ասպարեզ են։ Ներկայումս մանրակրկիտ ուսումնասիրությունների է ենթարկվում նրանցից մեկը՝ Մեծամորը։ Որքա՞ն հետաքրքիր հայտնագործություններ են կատարվել այստեղ և դեռ որքա՞ն էլ սպասվում է։ Երեքից մինչև հինգ հազար տարվա հնություն ունեցող այս բազարում կենտրոնացված է եղել ձուլման գործի հետ կապված մի խոշոր տնտեսություն՝ միաժամանակ գործող մի քանի հարյուր ձուլարաններով, հիմնական և օժանդակ նյութերի արտադրության, մետաղյա իրերի՝ այդ թվում 14 տեսակի բրոնզի, ոսկու և երկաթի հատուկ միացությունների ստացման, մածուկի և ապակե զարդերի, ներկերի արտադրության արհեստանոցներով, հարստացման ժայռափոր հսկա «ֆաբրիկաներով»։

Հնագետի աշխատանքը հրապուրիչ է և, ինչպես գիտության ամեն մի ճյուղ, նպատակ ունի պարզել անհայտը, հողի դարավոր շերտերի միջից վեր հանել ճշմարտությունը։ Մի դեպքում այն լինում է ակնհայտ, երևում է իր իսկական դեմքով՝ որպես ձուլարան կամ հարստացման ժայռափոր կառուցվածք, մի այլ դեպքում անհրաժեշտ են լինում լրացուցիչ որոնումներ և ուսումնասիրություններ, պարզելու համար թաքնվածի իմաստը, երբեմն շատ կարևոր հետևություններ են արվում աննշան թվացող նյութերից, ինչպիսիք են Մեծամորում ոսկու ձուլման միկրոսկոպիկ ապացույցները՝ ձուլման ընթացքում թափված մանրագույն կաթիլները։

Պեղումների միջոցով պարզվում է ոչ միայն այն, թե ի՛նչ են արտադրել Մեծամորում, այլև՝ թե ինչպե՛ս են ապրել ու աշխատել նրա բնակիչները։ Արհեստանոցների թափոններում



Նկ. 2.

հաճախ հանդիպում է խոտան արտադրանք. ինչի՞ց է առաջացել խոտանը՝ վարպետի գիտելիքների պակասի հետևանքո՞վ, հումքի անորակությունի՞ց, թե՞ խառնուրդների սխալ համամասնությունից։ Իսկ գուցե կան ուրի՞շ պատճառներ։ Մեծամորի հին բնակիչները կարծում էին,



Նկ. 1

*թե նման դեպքերում անմասն չէին նաև աստվածները: Եվ ահա արհեստանոցներին կից նրանք կառուցում էին պաշտամունքային շինություններ, զոհասեղաններ՝ տվյալ արտադրության հովանավորող աստված-*



Նկ. 3

*ներին զոհեր մատուցելու և հատուկ ծիսակատարությունների համար: Մարդիկ պաշտում էին բնության երևույթները՝ ջուրը,*



Նկ. 4

*կրակը, երկնային լուսատուները: Բազմաթիվ են Մեծամորում հայտնաբերված պաշտամուն-քային-տաճարական շինությունները, իսկ նրանց շարքում առանձնահատուկ է երկնային լուսատուներին նվիրված կառուցվածքների նշանակությունը: Համապատասխանաբար բազմաթիվ և բարդ են եղել ծիսակատարությունները: Հին Արևելքի պատմությունից հայտնի է, որ ծիսական արարողությունները գրի էին առնվում ամենայն մանրամասնությամբ: Իսկ ինչպե՞ս էին վարվում Մեծամորի բազմաթիվ քրմերը. կարելի է ենթադրել, որ նույնպես, չնայած ուղղակի ապացույցներ պեղումները դեռևս չեն տվել:*

*Այժմ որպես կարևորագույն փաստ կարելի է նշել, որ Մեծամորի քրմերը օգտագործում էին նշանագրեր: Դրանց մի քանի ժայռափոր օրինակներ արդեն հայտնաբերվել են:*

*Մեծամորի պեղումները շարունակվում են, ապպալում են նոր հետաքրքիր հայտնագործություններ, իսկ արդեն եղածի հիման վրա կազմակերպվել է պատմա-հնագիտական թանգարան, որն իր դռները մեծահասակների և ձեզ համար լայնորեն կբացի 1969 թվականին:*



Նկ. 5



Նկ. 6

ԿՈՐՅՈՒՆ ՄԿՐՏՉՅԱՆ

*Մեծամորի հնությունները ուսումնասիրող խմբի ղեկավար*

Նկ. 1. Բրոնզե գոտի Մեծամորից (2-րդ հազ. մ. թ. ա.)

Նկ. 2. 3. Մեծամորի հիերոգլիֆային գրերը (19-րդ դ. մ. թ. ա.)

Նկ. 4. Փորը մետաղաձուլական վառարան

Նկ. 5. 6. Մեծամորի հիերոգլիֆային գրերը (19-րդ դ. մ. թ. ա.)

## ԼՈՒՍԱՆԿԱՐՆ «ԱՆՑՆՈՒՄ Է» ԼԱՐԵՐԻ ՄԻՋՈՎ

Երևանի կենտրոնական փոստի մուտքի մոտ Գայանեն մի կարճ հայտարարություն կարդաց. «Ընդունվում են լուսանկարային հեռագրեր»:

— Ինչպե՞ս. մի՞թե հնարավոր է դա. — զարմացած շշնջաց նա:

— Այո՛, Գայանե՛. եթե դու ցանկանում ես որևէ հեռավոր քաղաքում ապրող քո բարեկամին լուսանկար, գծագիր կամ որևէ այլ նկար ուղարկել, կարող ես իսկականը հանձնել հեռագրիչին և կարճ ժամանակ անց, հասցեատերը կստանա դրա կրկնօրինակը: Եթե դու հետևում ես օրվա թերթերին, երբ մեր հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում տեղի է ունենում խոշոր իրադարձություն, այնտեղի միջոցառումներին նվիրված նկարների տակ գրված է լինում՝ «ստացված է լուսահեռագրով»:

Լուսահեռագրի հաղորդումը կատարվում է էլեկտրական լարերի կամ ռադիոյի միջոցով: Հեռագրիչը ձեր տված պատկերը՝ սկզբում հատուկ սարքի օգնությամբ ձևափոխում է էլեկտրական ազդանշանների: Ձևափոխումը կատարվում է ֆոտոէլեմեն-

տի օգնությամբ: Հեռատիպային տեխնիկը վերցնում է հաղորդման համար նախապատրաստված լուսանկարը կամ գծագիրը, փաթաթում հաղորդող գլանաձև թմբուկի վրա և միացնում փոքրիկ էլեկտրաշարժիչը: Թմբուկն սկսում է պտտվել: Թմբուկի առանցքին զուգահեռ դանդաղորեն շարժվում է փոքրիկ սայլակը: Սայլակի վրա ամրացված են օպտիկական տեսապակիներ, որոնք լուսանկարային հեռագրի թերթի վրա գցում են ուժեղ կենտրոնացված և շատ նեղ շերտով լուսային ճառագայթ: Ճառագայթը լուսավորում է հեռագրի (պատկերի) 0.2մմ. տրամագծով մակերես: Թմբուկի առաջին մեկ լրիվ պտույտի ժամանակ լուսավորվում է պատկերի 0.2 մմ. շրջագծով մասը:

Հաջորդ պտույտների ժամանակ լուսավորվում է ամբողջ պատկերը: Պատկերի վրա ընկնող լույսի անդրադարձումը ուղղվում է ֆոտոէլեմենտի վրա: Պատկերի սպիտակ և սև կետերի պատճառով ֆոտոէլեմենտի վրա անդրադարձող փոփոխվող լույսի ազդեցության տակ ֆոտոէլեմենտը փոփոխում է իր դիմադրությունը: Համապատասխանաբար փոփոխվում է շղթայի հոսանքի մեծությունը: Լուսանկարային էլեմենտի հոսանքը շատ փոքր է: Դրա համար կան հատուկ ուժեղացուցիչներ, որոնց միջոցով մի քանի հազար անգամ հոսանքն ուժեղացվում է: Ուժեղացված էլեկտրական տատանումները հաղորդվում են ռադիոհաղորդիչին: Հաղորդող կայանը նույն կարգով փոփոխում է ռադիոազդանշանները և ուղարկում ընդունող կայանին:

Ընդունող կայանի թմբուկի վրա ամրացված է մաքուր, լուսազգայուն թուղթ, որի դիմաց դրված է շարժական լամպիկ: Լամպիկը թղթի վրա ուղղում է նեղ ճառագայթ, որն առաջացնում է լուսային կետ: Ահա հենց այդ կետն է գծում հաղորդվող հեռագրի պատկերը: Լամպիկը ենթարկվում է ընդունվող ռադիոազդանշաններին, որոնց ազդեցության հետևանքով թմբուկի վրա գծվող ճառագայթը թարթվում է՝ փոփոխելով իր պայծառությունը: Լամպիկի լուսային ճառագայթը թղթի վրա առաջացնում է թույլ կամ ուժեղ սևացումներ: Հաղորդումը վերջացնելուց հետո թուղթը երևակում են, ինչպես սովորական լուսանկարը:

Սարքավորումներն աշխատում են ավտոմատ և այնպիսի արագությամբ, որ 12 րոպեում հնարավոր է հաղորդել աշակերտական տետրակի երկու էջի մեծությամբ լուսանկարային հեռագիր, չնայած նրան, որ հաղորդումը կատարվում է կետերի օգնությամբ:

*Ինժեներ Վ. ԲԵԳԼԱՐՅԱՆ*




Լույս է տեսնում 1923 թվականից

# ՊԻՈՆԵՐ

N 2 Փետրվար 1969 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*
*Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*


Գլխավոր խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԻՄՈՆՅԱՆ Կ. (գլխ. խմբագրի տեղակալ), ՍՄԲԱՏՅԱՆ Կ. ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.:

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.

*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, Հեռախոսներ՝ 56—32—72, 2—68—16, 56—14—96:*

ՎՖ 05322: Պատվեր՝ 42: Տպաքանակ՝ 62000: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 14/II. 1969 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91: Գինը՝ 10 կ.

10 կ.

Ինդեքս 77806







Ամենից առաջ խնամքով կտրեցեք հեռուստացույցի իրանը, Բ և Գ շրջանները և Ա շերտը, որը գլանաձև ոլորելու դեպքում կդառնա թմբուկ: Բայց նախքան ոլորելն անհրաժեշտ է շաբաթվա օրերին համապատասխան արտագրել ձեր օրվա ռեժիմը: Իհարկե, կարող եք փոփոխել այն ժամերը, որոնք նշված են Ա շերտի վրա՝ ձեր ցանկության համապատասխան: Հիմա իրանը ծալեցեք կետագծերով և սոսնձեցեք եզրերը: Մի՛ մոռացեք, որ հեռուստացույցի մի կողմը պետք է սոսնձել թմբուկը տեղադրելուց հետո միայն, ինչպես ցույց է տրված Զ նկարում: Ա շերտը գլանաձև ոլորեցեք ու սոսնձեցեք Բ և Գ շրջաններին, որոնց կենտրոնով պետք է անցկացնել 7.5 սմ. երկարությամբ փայտե մի առանցք (տես՝ Դ նկարը): Դ թմբուկը տեղադրեք հեռուստացույցի մեջ (նկ. Զ), առանցքի մի ծայրը իրանին ամրացրեք մետաղյա սրածայր կոճակով, մյուս ծայրը պետք է դուրս ցցված լինի Ե նիստից: Այժմ սոսնձեցեք նաև վերջին նիստը և «Հեռուստացույցը» պատրաստ կլինի «շահագործման» համար: Առանցքը պտտելով, դուք թափանցիկ էկրանի վրա կկարդաք շաբաթվա տվյալ օրվա ռեժիմը:







Այս եզրը պետք է սոսնձել թմբուկը տեղավորելուց հետո:

Ե

Այստեղ պետք է հակառակ կողմից թափանցիկ թուղթ կպցնել:

Ա

ՕՐՎԱ ՌԵԺԻՄ

| ԵՐԿՈՒՇԱԲԹԻ | ԵՐԵՔՇԱԲԹԻ | ՉՈՐԵՔՇԱԲԹԻ | ՀԻՆԳՇԱԲԹԻ | ՈՒՐԲԱԹ | ՇԱԲԱԹ |
|---|---|---|---|---|---|
| 8-9 | 8-9 | 8-9 | 8-9 | 8-9 | 8-9 |
| 9-10 | 9-10 | 9-10 | 9-10 | 9-10 | 9-10 |
| 10-11 | 10-11 | 10-11 | 10-11 | 10-11 | 10-11 |
| 11-12 | 11-12 | 11-12 | 11-12 | 11-12 | 11-12 |
| 12-1 | 12-1 | 12-1 | 12-1 | 12-1 | 12-1 |